# ՄԱՆԿՈՒԹՅԱՆ ՕՐԵՐ

Մանկությա՜ն օրեր, երազի նման
Անցաք գնացիք, այլ չեք դառնալու.
Ո՜հ դուք երջանիկ, ո՜հ անհոգ օրեր,
Ընդունակ միայն ուրախացնելու:

Ձեզանից հետո եկավ գիտություն
Յուր ծանր հայացքով աշխարհի վերա,
Ամեն բան ընկավ մտածության տակ,
Րոպե չմնաց ազատ կամ ունայն:

Գիտակցությունը հաջորդեց սորան,
Ազգի վիճակը ծանրացավ սրտիս...
Ապոլլոն տվեց ինձ յուր քնարը,
Որպես փարատիչ տրտում ցավերիս:

Ավա՜ղ, այդ քնարն իմ ձեռքում հնչեց
Նույնպես յալագին, նույնպես վշտահար,
Ինչպես իմ սիրտն էր, իմ զգացմունքը,
Ուրախացուցիչ չգտա մի լար:

Ես այն ժամանակ միայն զգացի,
Որ այդ ցավերից ազատվելու չեմ,
Որչափ իմ ազգս կմնա ստրուկ
Օտարների ձեռք, անխոս, տխրադեմ:

Մանկությա՜ն օրեր, ինչու՛ այդպես շուտ
Թռաք գնացիք, անդարձ հավիտյան.
Ես այն ժամանակ անհոգ ու ազատ
Կարծում էի ինձ աշխարհի իշխան:

Գերության շղթան ինձ զգալի չէր,
Եվ ոչ բռնության անգութ ճանկերը.
Ձեզանից հետո ծանրացան նոքա,
Ո՛հ, անիծում եմ ես այս օրերը:

Լո՛ւռ կաց, դու քնար, այլ մի՛ հնչեր ինձ,
Ապոլլոն, հե՛տ առ դարձյալ դու նորան,
Տու՛ր մի այլ մարդու, որ ընդունակ է
Զոհ բերել կյանքը սիրած աղջկան:

Ես պիտի դուրս գամ դեպ հրապարակ
Առանց քնարի, անզարդ խոսքերով.
Ես պիտի գոչեմ, պիտի բողոքեմ,
Խավարի ընդդեմ պատերազմելով:

Ներկա օրերում այլ ի՛նչ սև քնար,
Սուր է հարկավոր կտրիճի ձեռքին.
Արյու՜ն ու կրա՛կ թշնամու վերա,
Այս պիտի լինի խորհուրդ մեր կյանքին...

Լրացավ
հայ մեծ գրող,
բոցաշունչ
հրապարակախոս,
քննադատ,
ազատության
աննկուն
մարտիկ
ՄԻՔԱՅԵԼ
ՆԱԼԲԱՆԴՅԱՆԻ
ծննդյան
**150**
ամյակը

ԱՆԱՀԻՏ ՊԱՐՍԱՄՅԱՆ

# ՓՇԱԾԱՂԻԿ

Նվարդը ծանր հիվանդացավ։ Ֆիզկուլտ դասի՞ն էր մրսել, տա՞նը, թե՞ փողոցում, միևնույնն է, բժիշկն ասաց, որ նա շատ ուժեղ է մրսել, թոքերի բորբոքում ունի։

Նվարդի ընկերուհիները դպրոցից ամեն օր գալիս էին նրանց տուն, նոր դասերի տեղն ասում, բացատրում։ Երկու անգամ էլ դասղեկ ընկեր Հակոբյանը եկավ։ Բայց և այնպես, Նվարդը «մեռնում էր ձանձրույթից»։ Այդ ընթացքում նա կարդաց վերջացրեց տարվա համար նախատեսված գեղարվեստական գրականության զգալի մասը։ Մի բան կար, որ տխրեցնում էր նրան. դժվարանում էր մաթեմատիկայից, բավական ետ էր մնացել։ Դասղեկի խորհրդով ու հանձնարարությամբ Նվարդին այցելել սկսեց մաթեմատիկայից ամենաուժեղ տղան՝ Տիգրանը։ Ճիշտն ասած, Նվարդի համար միևնույնն էր, թե ով կօգներ իրեն, կուզենար նույնիսկ, որ աղջիկ լիներ։ Նրան թվում էր, թե Տիգրանն իրեն վերևից կնայի՝ իբր մաթեմատիկան ու՛ր, աղջիկն ու՛ր։ Դասղեկն հանձնարարել էր, և Տիգրանը եկավ։

Նախաճաշեցին, հետո նստեցին պարապելու։ Այդպես շատ օրեր, Նվարդը զգում էր, որ արդեն ավելի հեշտ է գլխի ընկնում։ Տիգրանը սակավախոս տղա էր, բայց կարողանում էր հարկավոր բառերը գտնել ու հասկանալի դարձնել ասածը։ Եվ հետո, ի՛նչ վերևից նայել, ի՛նչ բան. Տիգրանն այնպես պարզ ու անմիջական էր վարվում, որ Նվարդն առանց քաշվելու խնդրում էր նորից բացատրել չհասկացածը։ Շաբաթվա վերջում նրանք համարյա մտերմացել էին։ Մի օր էլ Տիգրանը, որ արդեն գիտեր, թե Նվարդը որքան է ծաղիկներ սիրում, թղթի մեջ փաթաթված մի ճյուղ էր բերել նրան։ Փոքրիկ ճյուղ էր, վրան՝ մուգ կանաչ, փայլուն տերևներ։ «Փշածաղիկ է»,— Նվարդի հարցական հայացքին պատասխանեց Տիգրանը։ «Իսկ ծաղկո՞ւմ է որ»,— հարցրեց Նվարդը։ «Էն էլ ո՜նց»։

Նվարդն առողջացավ, սկսեց դպրոց գնալ, բայց առաջվա պես սիրում էր մաթեմատիկային վերաբերող հարցերով դիմել Տիգրանին։ Իսկ փշածաղի՞կը... Հիմա նա պատշգամբի ամենալույս, արևոտ տեղերից մեկում էր, փայտե փոքրիկ ու կոկ մի տակառիկի մեջ։ Նվարդը խնամում էր հատուկ հոգատարությամբ։ «Ե՞րբ է ծաղիկ տալու, Տիգրան,— հետաքրքրվում էր Նվարդը,— մի՞թե այս տարի չի լինի»։ «Այս տարի դեռ վաղ է,— պատասխանում էր Տիգրանը,— փոքրիկ ճյուղ է, նոր միայն դրված հողի մեջ, բայց ո՞վ գիտի, պապիկս ասում է, որ ամեն ինչ կարող է լինել, մեկ էլ տեսար՝ ծաղկեց...»

Անցավ մի տարի։ Նվարդը փոխադրվեց 7-րդ դասարան։ Տարեսկզբին նրանց դասարանը նոր աշակերտներ եկան՝ քույր ու եղբայր՝ Սեդան ու Գեղամը։ Նրանց ընտանիքը նոր բնակարան էր ստացել քաղաքի այս մասում։ Եվ, զարմանալի բան, Տիգրանը, որ ընդհանրապես մենասեր էր, մի քանի շաբաթ անց արդեն մտերմացել էր Գեղամի հետ։ Մեծ մասամբ Սեդան էլ նրանց հետ էր լինում։ Միասին ֆուտբոլի խաղի էին գնում, համերգ, կինո։

Հաճախ միասին տեսնելով նրանց, Նվարդն զգում էր, որ ինքն էլ կուզենար նրանց հետ լինել։ Հետո, ավելի

ուշ, նրա համար պարզ դարձավ, որ ոչ թե նրանց բոլորի, այլ միայն Տիգրանի կողքին կուզենար լինել: Չգիտես ինչու, հիմա բաշխվում էր հանրահաշվից չհասկացած բաները հարցնել նրան: Գուցե նաև նրա համար, որ Տիգրանը երբեք մենակ չէր լինում: Մի օր էլ որոշեց Տիգրանին հրավիրել իրենց տուն, որ պարապեն մի քիչ, հետո էլ նրան ցույց կտա փշածաղիկը, որն արդեն փոքրիկ կոկոն է տվել:

Այդ օրը Նվարդն ինքն էլ չգիտեր ինչու երկար կանգնեց հայելու մոտ, էլի ու էլի սանրեց-հարդարեց մազերը, որոնք խարտյաշ ալիքներով փռվում էին ուսերին: Զգուշությամբ նրստեց նախաճաշելու, որպեսզի նուրբ վարդագույն զգեստը չնմրվի. նոր էր արդուկել:

Ֆիզիկայից Տիգրանին դաս հարցրին: «Հինգ» ստացավ:

Դասամիջոցին Նվարդը ուզեց մոտենալ նրան, բայց լուսամուտի մոտ Գեղամն ինչ-որ բան էր պատմում Տիգրանին: Սեդան ու նա ուրախ կչկչում էին: Մեծ դասամիջոցին կասեմ՝ մտածեց Նվարդը: Մեծ դասամիջոցին բոլորը խռնվեցին բուֆետում: Տիգրանը՝ Գեղամի ու Սեդայի հետ, այնտեղ էր:

Սեդան նստել էր Տիգրանի մոտ, մի կերպ՝ նույն աթոռի վրա, իսկ Գեղամը կանգնած էր, երբեմն էլ արագ-արագ երշիկ ու հաց էին ուտում և հյութ խմում: Բուֆետը փոքր է, աշակերտները՝ շատ, իհարկե, նստելու տեղ մեծ մասամբ չի լինում, բայց ինչու՞ է Տիգրանը խցկվել Սեդայի հետ միևնույն աթոռին, կարող էր կանգնել, ինչպես Գեղամն է կանգնել, մտածում էր Նվարդը:

Նա ուտել չէր էլ ուզում, բայց գաթա և հյութ վերցրեց: 8-րդ «բ»-ի կարենը խեղույն տեղը զիջեց նրան: Նվարդը նստեց: Դեռ 5 րոպե կար զանգին: Կծմծեց գաթայից, խմեց հյութը: Հետո վեր կացավ: Վերևում, պատուհանի մոտ կանգնեց, դասարան մտնել չէր ուզում: Տեսավ մեկ էլ, որ Տիգրանը գալիս է: Նվարդը մոտեցավ, խնդրեց նրան, որ օգնի իրեն վերջին դասի խնդիրները լուծելու: Այն է, ուզում էր փշածաղիկի մասին էլ ասել, երբ հայտնվեցին Գեղամն ու Սեդան: Նրանց մոտ չուզեց խոսել փշածաղիկի մասին, կարծես դա իր ու Տիգրանի գաղտնիքը լիներ: Զուզեց: «Այսօր, հա՞, դասերից հետո»,— ամփոփեց Նվարդն ու ինքն էլ չիմացավ ինչու, շիկնեց:

— Էդ ու՞ր,— աշխույժ անելով խընդմընդաց Սեդան,— էդ ու՞ր բաքուն-բաքուն:

— Հանրահաշիվ պիտի պարապենք,— բրթմնջաց Տիգրանը:

— Իսկ դու, ի՞նչ է, չե՞ս կարողանում,— պեպենոտ քիթը կնճռոտեց Սեդան և նակատին ընկած գորշ մազափունջը ետ տալով, ավելացրեց.— Ուզու՞մ ես, ես...

Լավ էր, որ հնչեց զանգը: Նվարդը ձեռքով մի շարժում արեց՝ իբր հետո կխոսենք, ու գրեթե վազեց դասարան: Այնպե՞ս կուզենար այս պահին մենմենակ լինել, ուրիշ մի տեղ, անտառում, գյուղում ու լաց լիներ ազատ, հեկեկալով, դա հանգստացնում է:

Բայց դրա փոխարեն համարյա հեգնանքով նայեց դեպի նստարանը գնացող Սեդային:

Ոչ, ինքն այլևս երբեք, երբեք չի դիմի Տիգրանին հանրահաշվի համար: Պետք եղավ, կդիմի իր նորեղբորորդի Ռուբիկին, պոլիտեխնիկի առաջին կուրսում է:

Նրա սիրտը ճմլվեց այն մտքից, որ այլևս երբեք չեն կրկնվի իր ու Տիգրանի պարապմունքները իրենց տանը, ինչպես այն ժամանակ, իր հիվանդության օրերին...

Եվ որ ինքը մենակ պիտի տեսնի փշածաղիկի կոկոնի ծաղկելը...



Կան անուններ, որոնք առանձին սիրով և ջերմությամբ ենք արտասանում: Այդպիսին է երգահան Արմեն Տիգրանյանի անունը՝ անմահ «Անուշից» անբաժան:

Հայ երաժշտությունը Տիգրանյանի ստեղծագործությունը սնող մշտական աղբյուրն էր: Հայրենի Ալեքսանդրապոլի անվանի աշուղների ոգեշունչ երգերը, Վարդավառի տոնի՝ աղջիկների խաղն ու պարը, ձմեռային գիշերվա հարսանիքը՝ զուռնայով, կոխ բռնելով, յայլաներում հովվի սրնգի կանչը — այս ամենը կենդանի երաժշտական կերպարների տեսքով մարմին առան նրա ստեղծագործություններում:

Թիֆլիսում, ուր դասեր էր առնում

ԱՐՄԵՆ ՏԻԳՐԱՆՅԱՆԻ
ԾՆՆԴՅԱՆ 100-ԱՄՅԱԿԸ

# ԱՆԹԱՌԱՄ ՄԵ

● «Անուշ» օպերան Ալ. Սպենդիարյանի անվ. օպերայի և բալետի թատրոնի բեմում





հայտնի մանկավարժ Ն. Կլենովսկուց և Մ. Եկմալյանից, առաջին անգամ ճաշակեց Չայկովսկու և Վերդիի օպերաների հմայքը։ Ո՛վ գիտի, գուցե հենց այստեղ միտք հղացավ ստեղծելու ազգային օպերա, որին վիճակված էր դառնալ հայ արվեստի թանկագին գանձը։

բայի հիմքում։ «Անուշի» և «Դավիթ-Բեկի» երաժշտությունը դուրս եկավ թատրոնի շրջանակներից, երգվեց ժողովրդի կողմից, հարազատ դարձավ նրան։ Եվ դա մի՞թե ստեղծագործողին տրված բարձրագույն պարգևը չէ։

*ԱՐՄԵՆ ԲՈՒԴԱՂՅԱՆ*

# ՂԵԴԻՆԵՐԻ ՎԱՐՊԵՏԸ

Առաջին անգամ ներկայացվելով 1912-ին Ալեքսանդրապոլում, ծայր աստիճան անբարենպաստ պայմաններում, «Անուշը» շուտով համաժողովրդական ճանաչում ստացավ։ «Անուշ»-ում նոր կյանքով ապրեցին թումանյանական սիրված հերոսները, կրկնապատկելով իրենց հմայքը երաժշտական և բեմակատարողական միջոցների ներգործությամբ։ Տիգրանյանի արտահայտչական կարևորագույն միջոցն էր երգայնությունը, սրտաբուխ, հուզաթով մեղեդին։ Երգայնությունն ընկած է նաև Տիգրանյանի «Դավիթ-Բեկ» պատմահերոսական նշանավոր օպե-



*«Դավիթ Բեկ» օպերան առաջին անգամ բեմ բարձրացավ 1950 թ., Երևանում։*

*Տեսարան «Դավիթ Բեկ» օպերայից*

# ԶՐՈՒՅՑՆԵՐ ԼԵԶՎԻ ՄԱՍԻՆ

*ԼԵՎՈՆ ՀԱԽՎԵՐԴՅԱՆ*
*բանասիրության դոկտոր*

## 20. ԺԱՐԳՈՆԻ ՄԱՍԻՆ՝ ԱՌՀԱՍԱՐԱԿ

Հիշու՞մ եք Պուշկինի «Կապիտանի աղջիկը» վիպակի այն տեղը, ուր միմյանց հետ խոսում են երկու մուժիկ (որոնցից մեկը, ինչպես պարզվում է հետագայում, Պուգաչովն է լինում), իսկ ունկնդիրը (հեղինակը) չի հասկանում, թե նրանք ինչ են ասում միմյանց: «Ես այն ժամանակ ոչինչ չէի կարող հասկանալ այդ գողային խոսակցությունից»,— գրում է հեղինակը: Պատճառն այն է, որ նրանք խոսում են միայն իրենց հայտնի պայմանական լեզվով, իսկ դրան ունկնդիրը ծանոթ չէ:

Ռուս բանաստեղծ Ի. Սելվինսկին ունի մի ոտանավոր, ուր կան քրեական միջավայրի ժարգոնային բառեր: «Վեցերորդը գալիս է»՝ ըստ այդ ժարգոնի նշանակում է զգուշացիր, ամբա՝ նշանակում է վերջ և այլն:

Սոցիալական կամ մասնագիտական տարբեր խավերի պատկանող մարդիկ բառ առ բառ, դարձվածք առ դարձվածք, մեջտեղ եկած դիպվածաբանությունները կուտակելով՝ միևնույն լեզվի մեջ ստեղծում են տարբեր խոսվածքներ, որոնց ժարգոն անունն են տալիս:

Քիչ չի պատահում, որ ժարգոնային բառերն ու դարձվածքները մըտնեն ընդհանուր խոսակցական լեզվի մեջ: Բերենք մի օրինակ: Լսում ենք «փափախ անել» դարձվածքը և հասկանում, որ դա նշանակում է՝ հավելյալ շահ ստանալ: Որտեղի՞ց է խոսակցական լեզու մուծվել այդ դարձվածքը: Շոֆերական ժարգոնից: Իսկ ինչպե՞ս է գոյացել: Այն ժամանակ, երբ ավտոմեքենաներ քիչ կային, իսկ գյուղացիները դեռ մորթե փափախ էին դնում, նրանք ճանապարհին մեքենաները կանգնեցնում էին փափախները առաջ մեկնելով: Տեղափոխման վարձը հասնում էր շոֆերին (որին հիմա վարորդ ենք կոչում): Շոֆերներից մեկը դա կոչել է «փափախ անել», դարձվածքը տարածում է գտել ու մի օր էլ այդ դիպվածաբանությունը շոֆերական ժարգոնից մտել է մեր խոսակցական (բայց ոչ գրական) լեզվի մեջ:

Մի հետաքրքիր օրինակ էլ բերենք ռուսերենից: Կարող եք լսել կամ կարդալ «*дело табак*» դարձվածքը, որ հայերեն կնշանակի «բանն բուրդ է» կամ՝ «բաններս բուրդ է»: Որտեղի՞ց է տարօրինակ այդ դարձվածքը մտել ռուս խոսակցական լեզվի մեջ: Բուռլակների ժարգոնից: Բուռլակները Վոլգայի ափերին աշխատող այն բանվորներն էին, որ փոկերը վիզը գցած՝ նավերը քաշում էին դեպի ափ (հիշու՞մ եք Ի. Ռեպինի նշանավոր «Բուռլակներ» կտավը): Երբ գործը դժվարանում էր, բուռլակներն ավելի ու ա-

վելի էին խրվում ջրի մեջ՝ ջուրը հասնում էր վզներին, թրջելով ապահովության համար վզներից կախված թութունի (ծխախոտ-*табак*) քիսաները: Պարզ բան է, որ այս նեղ ժամին նրանք կարող էին ասել՝ *дело табак*, այսինքն՝ ջուրը հասել է թութունին, տեղներս նեղ է: Եվ այս պատկերավոր արտահայտությունն օրերից մի օր հայտնվել է համաժողովրդական ռուսաց լեզվում:

Ժարգոնները չպետք է շփոթել բարբառների հետ, որոնց գոյությունը պայմանավորված է տեղավայրերով (Լոռվա բարբառ, Ղարաբաղի բարբառ և այլն): Լեզվաբանները տարբերակում են բազմապիսի ժարգոններ. ըստ սոցիալական բաժանման՝ ազնվականության ժարգոն, գողերի ժարգոն, սալոնային ժարգոն և այլն, ըստ մասնագիտական բաժանման՝ ռազմական, ծովային, սպորտային, երկաթուղային և այլն:

Հիմա էլ Լոնդոնի ամեն բնակիչ չէ, որ կարող է հասկանալ նույն քաղաքում ապրող դոկերների՝ նավահանգրստային բանվորների ժարգոնը: Այնտեղ նույնիսկ գրքեր են տպվում, ներկայացումներ են խաղացվում կոկնիով (այսինքն՝ ժարգոնով), միանգամայն անհասկանալի այն անգլիացուն, որ գիտե միայն ընտիր անգլերենը, այսպես կոչված, քինգ ինգլիշը (արքայական անգլերենը): Եթե հիշում եք, Վիկտոր Հյուգոյի «Թշվառները» հռչակավոր վեպում կան հասարակության ստորին խավին պատկանող կերպարներ, որոնք խոսում են սովորական ֆրանսիացուն անմատչելի արգոյով (այսինքն՝ ժարգոնով):

Բնականաբար, որքան մեծ են հասարակության դասակարգային և սոցիալական հակասությունները, այնքան էլ մեծ են սոցիալական տարբեր խմբավորումների խոսվածքային տարբերությունները: Ուստի և հասկանալի է, թե ինչու մեր երկրում խոսվածքային տարբերությունները ավելի շուտ վերաբերում են տարբեր զբաղմունքի տեր, տարբեր ասպարեզի պատկանող մարդկանց խոսվածքի տարբերություններին:

Ժամանակակից հայերենում ևս կան այդպիսի խոսվածքային տարբերություններ: Այս դեպքում մեզ, կարծում ենք՝ մեր ընթերցողներին ևս, ամենից ավելի պետք է զբաղեցնի դպրոցական ժարգոնը, որը գուցե և այնքան չի տարանջատվում մեր սովորական խոսակցական լեզվից՝ ժարգոն կոչվելու համար, բայց դա, գեթ պայմանաբար, այդպես կարող ենք կոչել:

## ՍԵՎԱՆ

**ՍԱՐԳԻՍ ԽԱՐԱԶՅԱՆ**

Սևա՛ն, Սևա՛ն, զմրուխտ Սևան,
Հրաշք պիտի տեսնես շուտով,
Պիտի ջրերդ ավե՜անան
Լեռան զանգակ Արփա գետով:
Ինչե՛ր պիտի տեսնես դու դեռ
Այս նոր ժամփին քո երազի...
Կղզին, որ չոր ափ է դարձել,
Գուցե դառնա նորից կղզի:
Պիտի ելնես յուրք ծփանքով,
Դիպչես քո հին ժայռ ու քարին
Եվ երգ ասես նրանց համար,
Ովքեր Արփան գիրկդ բերին:

## Գիտե՞ք որ...

Հյուսիսային Ամերիկայի տորֆային ճահիճներում աճում են այսպես կոչված միջատակեր ծառեր: Նրանց տերևները ունեն ցցամազեր, որոնք որսում են միջատներին: Ցցամազերին դիպչող միջատը ընկնում է խողովակների մեջ, կլանվում, և ծառը կամաց-կամաց մարսում է որսը:



Հազվագյուտ բույսերի թվին է պատկանում ջրաշուշան «Վիկտորիա ռեգիան»: Հայտնաբերվել է 1887 թվականին Ամազոնի գետախորշերում: Նրա հսկայական տերևները, որոնց տրամագիծը հասնում է 2,2 մետրի, նման են թավայի: Տերևը կկարողանա ջրի երեսին մնալ նույնիսկ այն ժամանակ, երբ նրա վրա դրվի մինչև 50 կիլոգրամ ծանրություն:



Հիվանդ բույսերը դողացնում են այնպես, ինչպես տաքարյուն կենդանիները: Հայտնաբերված է, որ հիվանդ բույսերի տաքությունը ավելի բարձր է ու «շնչառությունը» արագ, քան թե նույն պայմաններում գտնվող առողջ բույսերինը: Մի քանի բույսերի ջերմաստիճանը ավելի բարձր է, քան շրջապատող միջավայրինը:

# ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ



ԼՅՈՒԴԱ ԶԵՐԱՆ
Վոլինսկի երկրամաս, գ. Պոլյանի

Այդպիսի տղա էր նա, ի՞նչ կարող ես անել: Կենդանիների ձայները լրացնում էին նրա բառապաշարը: Գուցե դա նրանից էր, որ նա շա՜տ էր սիրում կենդանիներին:

Այսպես թե այնպես, երբ նորենն իջավ բակ ու ծանոթացավ իր նոր ընկերների հետ, ընդհանուր քվեարկությամբ նրան որոշեցին անվանել «Հաչան-Մլավան-Մռնչան-Կծան»: Իսկ որովհետև այդ անունը շատ երկար էր, նրան կանչում էին ուղղակի «Հաչան»:

Շատերն են սիրում կենդանիներին, և զարմանալի չէ, որ լսելով գիլ հաչոցը, նույնիսկ ինքը՝ Մեծն Տոմադոն, իր կարմիր մոտոցիկլետով սլացավ դեպի այդ կանչը:



# ՋԻՆԵՐԸ ՔԱՂԱՔՈՒՄ

Քաղաքը անթիվ գործերի տենդով
Աղմկում նորից, տնքում էր նորից:
Ցանկապատված էր ամուր երկաթով
Կենդանիներից ու թռչուններից:

Եվ այդ քաղաքում որտեղից-որտեղ
Լույս ընկան ձինե՛ր,
Արշավաձինե՛ր...

Քաղաքում գործեր, հոգսեր կան
պես-պես,
Եվ ծուխ է իջել փողոցին, բակին:
Ու հանկարծ՝ դոփյուն... հսկաներն
ասես
Եկել դռներն են ծեծում քաղաքի:

Եվ արշավում են ձիերը առույգ
Լայն փողոցներով, մայթերով բանուկ:

Զարմանքի բվվոց տիրեց քաղաքին,
Մի պահ քարացավ, լռեց ամեն ինչ,
Ամեն ինչ տրվեց առույգ սլացքին,
Թարմացավ օդը ձիերի շնչից:

Սլացքի քաղաք, դու՝ բետոնե կուռք,
Դու՝ օրրան անթիվ գործ ու հոգսերի,
Թեթևացրին քեզ մի քանի ձիուկ,
Մի քանի ձիուկ պարզ ու սիրելի:

*ԴԻՄԱ ՏՈՐՈՊՈՎ*
*14 տ., ք. Վլադիվոստոկ*
*Թարգմ. Մ. ՈՍԿԱՆՅԱՆԻ*

# ՎՐԵԺԸ

Տոմադոն հարգում էր իրեն: Համոզված էր, որ ստեղծված է ընդհանուրի հիացմունքի համար: Եվ հիացնում էր ամենքին փողոցով քայլելիս, խոսելիս և ժպտալիս: Փոքրիկի հետ զրուցելիս պարզապես գեղեցիկ էր:

Մոտոցիկլետը կտրուկ արգելակեց փոքրիկի թիկունքում: Փոքրիկը շրջվեց: Ծուխը չէր երևում:

— Այդ ո՞վ էր հաչում,— հարցրեց Տոմադոն:

Տղայի անմեղ հայացքը սահեց Տոմադոյի և կարմիր մոտոցիկլետի վրայով: Նա հաճույքով պատասխանեց.

— Ես:

Արագությունից արբած Տոմադոն օրորվեց տեղում:

— Ինչու՞ էիր հաչում:

Տղան զարմանքով նայեց հսկայի վրա:

— Չգիտեմ:

— Անունդ ի՞նչ է:

— Արա: Իսկ քո՞նը:

Տոմադոն թքեց:

— Քե՞զ ինչ:

— Հենց այնպես... Սա քո՞նն է:

Տոմադոն շոյեց ղեկը:

— Այո: Լա՞վն է:

Մոտոցիկլետի մասին խոսելիս նա բարիացավ:

— Երբ մեծանամ, ես էլ կունենամ:

Տոմադոն զարմացավ.

— Հայտնի չէ: Իսկ ես արդեն ունեմ:

Նա հեծավ նժույգը և, տղային մոռացած, հաղթական ռռնոց արձակե-

լով, պոկվեց տեղից: Հոնդյունից դեռ երկար ժամանակ դողում էին մոտիկ տների լուսամուտների ապակիները:

Երկու օր անց Տոմադոն կրկին մոտեցավ նորեկին.

— Բարև:

Տոմադոն ինչ-որ մեկին բարևու՞մ է: Դա չլսված բան էր: Նրա ստրուկները խմբվեցին նորեկի շուրջը:

— Բարև՛,— ասաց տղան:

— Կարգին չե՞ս կարող բարևել,— Տոմադոն մեկնեց ձեռքը:

Տղան ժպտաց ու մեկնեց այն:

Տոմադոն նույնպես սեղմեց: Այնպես, որ նորեկը ցավից կապտեց:

Ստրուկները հասկացող տեսքով քմծիծաղեցին:

Տոմադոն ավելի ու ավելի ուժեղ էր սեղմում: Որպեսզի ինչ-որ կերպ դիմադրի ցավին, նորեկը ստիպված էր իր հերթին սեղմել: Լռություն տիրեց: Բոլորը հետևում էին մենամարտի ընթացքին:

Հանկարծ... Արան թուլացրեց ձեռքը: Նրա փոքրիկ քրտնած ափը դուրս պրծավ աքցանից: Տոմադոյի համար դա անսպասելի էր: Բայց նա չշփոթվեց, չէ՞ որ նա պիտի միշտ գեղեցիկ լիներ:

Նա տղայի գլխից թռցրեց գլխարկը:

— Խոխոա՛, կտամ:

Ստրուկներն ուրախ ծիծաղեցին: Դա արդեն նյութական վնաս էր: Նորեկն ուզեց ամեն մի երեխայի նման նվնվալ.

— Լավ էլի՜... տու՛ր:

Բայց հանկարծ լռեց ու հատ-հատ արտասանեց ուղիղ Տոմադոյի երեսին.

— Խրյու՜-խրյու՜:

Տոմադոն ստիպված էր գլխարկը վերադարձնել...

Հաջորդ օրը նա կրկնեց իր կատակը: Այս անգամ ամեն ինչ ընթացավ բոլորովին այլ կերպ: Երբ Տոմադոն ասաց.

— Խոխա՛, կտամ:

Արան պատասխանեց.

— Մոնչա՛, կխոխոամ:

Դա ծաղր էր: Տոմադոն մի հարվածով նորեկին ուղարկեց թփերի ետևը, թքեց նրա կողմն ու, գոռալով, հեռացավ:

Ամբողջ հաջորդ օրն Արան աշխատեց վրիժառության պլանի վրա: Վերջ ի վերջո այդ պլանն այնքան կատարելագործվեց, որ յուրաքանչյուր գործողությունը գրանցված էր ըստ ժամերի և րոպեների:

12.00-ին Արան մուրճով ջարդեց գիպսե դրամարկղը, որը միաժամանակ վարդագույն խոզուկ էր: Ափսոսանքը թաքցնելով, տղան հավաքեց կոպեկները՝ 16 ռ. 23 կ., և գնաց «Տնտապրանքներ» խանութը, որը գտնվում էր դիմացի մայթի վրա:

12. 30-ին Արան դուրս եկավ «Տնտապրանքներ» խանութից՝ ձեռքին մի սովորական փաթեթ:

12. 45-ին նա մոտեցավ Տոմադոյի գարաժին, որտեղ նա պահում էր մոտոցիկլետը: Փաթեթը բացելով, Արան այնտեղից հանեց երկու մեծ կախովի կողպեք, թղթով մաքրեց յուղը և մի քանի անգամ պտտեցրեց բանալին, որպեսզի համոզվի, որ կողպեքները լավ են աշխատում:

Երևի նկատած կլինեք, որ կողպեքների համար գարաժի դարպասի վրա լինում է երեքական ծակ: Մեծ մասամբ օգտագործվում է ծակերից միայն մեկը: Տոմադոյի գարաժը չէր տարբերվում մյուսներից:

Օգտվելով դրանից, Արան երկու





ԻԼՈՆԱ ԷԴԵԼ
ԳԴՀ

կողպեքներն էլ անցկացրեց ծակերի միջով և կողպեց: Համոզվելով, որ զարաժը կողպված է հանգամանորեն, նա հանգիստ շվշվացնելով հեռացավ:

13. 10-ին Տոմադոյի բնակարանում զանգահարեց հեռախոսը:

— Ալլո՞. Տոմա՛դո, դո՞ւ ես:

— Հա՛...

— Մի շուտ լուսամուտից դու՛րս նայիր: Մոտոցիկլետդ փախցրել են...

Տոմադոն գցեց լսափողն ու թռավ լուսամուտագոգին: Ոչ մի արտասովոր բան չտեսնելով, նա արագ իջավ բակ և միայն այստեղ նկատեց կողպեքների քանակի ավելացումը:

— Այդ ո՞վ է, այդ ի՞նչ է, կատա՞կ: Կսպանեմ: Ինչպե՞ս, ե՞րբ:

Դեմքի այսպիսի արտահայտությամբ նա հենվեց պատին, մի քիչ մտածեց ու գնաց աղոցի հետևից:

13. 30-ին զանգ միլիցիայի մոտակա բաժանմունքում:

— Ալլո՛, դա միլիցիա՞ն է: Արագ, խնդրում եմ, եկեք Կուտուզովի փողոցի № 19 տան բակը, այստեղ փորձում են գողանալ ավտոմեքենա... Տերը տանը չի:

13. 40-ին միլիցիայի ֆուրգոնը վայնասունով մոտեցավ կողպեքները եռանդով աղոցող Տոմադոյին:

— Այդ ի՞նչ ես անում:

— Ե՞ս... Ոչինչ...

— Ահա... Պողպորուկով, չթողնես, որ փախչի, եկ այս կողմից, այսպես,— նրանք հարձակվեցին Տոմադոյի վրա:

— Ի՞նչ եք ուզում, թողե՛ք, ես մեղավոր չեմ, ես ոչինչ չեմ արել, սա իմ զարաժն է...

— Ինչպե՞ս չէ, ինչպե՞ս չէ,— կըրկնում էր Պողպորուկովը:

Աչքացի տվող Տոմադոյին տեղավորեցին ֆուրգոնում ու տարան: Եռտնամուտքերից երևում էին ստրուկների վախկոտ հայացքները:

...Գլխարկը գլխին քաշած, Արան ուրախ ծիծաղում էր: Հետո նա երկարածից մլավոց արձակեց և գնաց ըզբոսնելու:

ԳԵՎՈՐԳ ՏԵՐ-ԳԱԲՐԻԵԼՅԱՆ
Կրուպսկայայի անվ. դպր., 10-րդ դաս.

### *Թիմուրի համամիութենական շտաբի*

# ՀՐԱՄԱՆԸ

*բոլոր թիմուրական խմբերին, ջոկատներին, շտաբներին*

Ի պատիվ ֆաշիստական Գերմանիայի դեմ տարած հաղթանակի 35-ամյակի, հայտարարել «ՎԵՏԵՐԱՆՆ ԱՊՐՈՒՄ Է ԿՈՂՔԻԴ» օպերացիան։

Օպերացիայի ընթացքում.

— Կապ հաստատել շրջանային, քաղաքային, մարզային զինկոմիսարիատների, սոցիալական ապահովության բաժինների հետ, ճանաչել ձեր շրջապատում՝ տանը, միևնույն փողոցում ապրող, դպրոցում՝ ուր սովորում եք, շեֆ գործարանում կամ կոլտնտեսությունում աշխատող ռազմի ու աշխատանքային սխրանքի բոլոր վետերաններին.

— թիմուրական կարմիր աստղիկներ փակցնել վետերանների տներին և ամենօրյա հոգատարությամբ ու ուշադրությամբ շրջապատել նրանց.

— փետրվարի 23-ին՝ սովետական բանակի օրը, մայիսի 9-ին՝ Հաղթանակի օրը պատվո՛ պահակներ կանգ-

ԱՐՁԱԳԱՆՔՈՒՄ ԵՆ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԸ

«ՎԱՏ» ՀԱՅՈՑ ԼԵԶՎԻՑ



# ՄԻ՞ԹԵ ԿԱՐԵԼԻ Է

Ձեռքս ընկավ 9-րդ դասարանցու մի հարցատետր։ Կարդում եմ հարցը. «Ի՞նչ մասնագիտություն ես ընտրել և ինչու՞»։ Մեկը պատասխանել է. «Ես ընտրել եմ ավտոդառոժնի իսպեկտորի մասնագիտությունը... որովհետև այդտեղի կլենտները շատ են»։ Կարդում եմ մյուս պատասխանը. «Ընտրել եմ սպորտսմեն դառնալ, որովհետև շատ եմ սիրում»։ Եվ գրեթե բոլոր պատասխանները ոչ հայերենով։ Եթե մեկին փորձես ուղղել, կոպիտ կպատասխանի. «Պրոբլեմ չէ»։ Հայոց լեզուն «պրոբլեմ» է դառնում միայն դպրոցում, որից հետո ոչ ոքի չի անհանգստացնում այն, որ աշակերտները խոսում են տգեղ, աղավաղված հայերենով։

Մտնում եմ 8-րդ դասարան։ Գրատախտակին մեծ-մեծ տառերով գրված է. «Ես իմ անուշ հայաստանի...» Ի՞նչ հոգևոր զարգացման մասին է խոսքը, երբ 8-րդ դասարանցին փոքրատառով է գրում «Հայաստան» բառը։ Մեկը չկար, որ վերցներ կավիճը և ուղղեր։ Չորս կողմը անտարբերություն էր։

*ԷՄԻԼԻԱ ԳՐԻԳՈՐՅԱՆ*
*Կայինինո, № 2 դպր., 9-րդ դաս.*

# «ԴՈ՞Ւ ԷԼ ԶԱՐԳԱՑԱՐ»

Ես էլ շատ-շատերի նման մինչև վերջերս դպրոցում խոսում էի մա-

հեցնել հուշարձանների ու կոթողների մոտ, հետևել եղբայրական գերեզմաններին, հանդիսավոր տողաններ ու հավաքներ անցկացնել.

— սովետական ժողովրդի համար հիշարժան օրերին ծաղիկներ ու նվերներ մատուցել վետերաններին, անցկացնել «Իմ նվերը վետերանին» մրցույթ.

— ջոկատներում ստեղծել հետախուզական խմբակներ, իմանալ անհայտ հերոսների անունները, օգնել զոհվածների ընտանիքներին, օգնել հանդիպելու մարտական ընկերներին.

— ջոկատներում վետերաններին նվիրված հավաքներ անցկացնել, գրի առնել նրանց հուշերը և ուղարկել Թիմուրի համամիութենական շտաբ.

— աշխատանքում առաջնորդվել ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկեր Լեոնիդ Իլյիչ Բրեժնևի խոսքերով. «Պատմական ճակատամարտերի վետերանների նկատմամբ տածած հարգանքը, հոգատարությունը՝ մեր կյանքի բարոյական օրենքն է»:

ՀՐԱՄԱՆԻ կատարման մասին զեկույցները Թիմուրի շտաբի հասցեով ուղարկել 1980 թվականի փետրվարի 28-ից ոչ ուշ:

ԹԻՄՈՒՐԻ
ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ
ՇՏԱԲ

*ք. Մոսկվա*

---

«ԱՆՀԱՇՏՈՒԹՅՈՒՆ ԴԱՍԱՐԱՆՈՒՄ...: ԻՆՉՈ՞Ւ»

# Ո՞ՒՐ ՄՆԱՑ ԸՆԿԵՐՈՒԹՅՈՒՆԸ

Այժմ 8-րդ դասարանում ենք: Վեց տարի համերաշխ ենք եղել, իսկ անցած ուսումնական տարվանից դասարանի 10 աղջիկներ խռովել են մի սուսիկ-փուսիկ տղայից: Չգիտեմ, թե ինչ պատճառով աղջիկներից մեկը վիճեց նրա հետ, հետո մյուսներին հրամայեց խռովել: Տղաներն էլ աղջիկներից խռովեցին և այսպես, առանց լուրջ պատճառի, համերաշխությունը չքացավ դասարանից, փոխարենը սկսվեցին փոխադարձ վիրավորանքն ու ատելությունը: Եթե հարցնեք՝ «Ինչու՞ եք խռովել», կպատասխանեն. «Քեֆներս տըվել է, խռովել ենք»:

Իսկ ո՞ւր մնաց ընկերությունը:

*ՆԱԶԻԿ ԲԵԳԼԱՐՅԱՆ*
*ԼՂԻՄ, Մարդակերտի շրջան*



---

քուր հայերենով, իսկ դպրոցից դուրս՝ ինչպես պատահեր:

Այս տարի ես հյուր էի գնացել իմ ընկերուհիներից մեկին, որը բնակվում է Երևանում: Խոսելով անցնում էինք փողոցով, երբ մի բարձրահասակ աղջիկ, դիմելով ինձ ասաց.

— Ընկերուհի՛, խընդրում եմ հայերեն խոսեք:

Ես ամոթից կարմրեցի և որոշեցի խոսել գրական հայերենով: Սակայն առաջին իսկ խոսքից հետո ընկերներս ծաղրանքով վերաբերվեցին. «Դո՞ւ էլ զարգացար, արդեն քաղաքավարի ես խոսում»:

*ՍՈՒՍԱՆՆԱ ԹՈՒՄԱՆՅԱՆ*
*Շամշադինի շրջան.,*
*Բերդ ավան,*
*№ 2 դպր., 9-րդ դաս.*

## «ԼՈՒՍԱԲԵՐ»-ից

### Նապաստակն ու կրիան

— Ի՜նչ դանդաղաշարժ ես,— ասավ մի օր նապաստակը կրիային:— Իսկ ես, տեսնո՞ւմ ես, ինչպե՜ս եմ վազում:

— Դե որ այդպես է, արի՛ գրազ գանք,— պատասխանեց կրիան:— Տեսնենք՝ ո՞վ ավելի շուտ կհասնի այն կաղնի ծառին:

— Իհարկե ես,— ասավ նապաստակը ու վազեց: Կես ճանապարհին ինքն իրեն ասավ.

— Ես կհասնեմ, երբ ուզում է լինի: Մի քիչ դեռ քնեմ:

Ու դաշտումը ձգվեց քնեց:

Իսկ կրիան դանդաղ գնում էր ու գնում դեպի կաղնի ծառը:

Մինն էլ նապաստակը զարթնեց ու վազեց դեպի ծառը. հասավ, տեսավ՝ կրիան արդեն ծառի տակին է:

### Երկրի շուրջը

— Հայրի՛կ ջան, ի՞նչ կա մեր այգիներից դենը,— հարցրեց Հասմիկը:

— Չգիտե՜ս, աղջիկս: Արտե՛ր:

— Իսկ արտերից դե՞նը, հայրի՛կ:

— Սարեր: Տե՛ս:

— Իսկ սարերից դե՞նը:

— Կրկին սարեր, կրկին ձորեր, ծովեր:

— Իսկ ծովերից դե՞նը:

— Ուրիշ երկրներ, ուրիշ աշխարհներ, էլի ծով, էլի ցամաք: Եվ գիտե՞ս, հոգի՛ս, եթե այդպես գնաս ու գնաս՝ ո՞ւր կհասնես:

— Ո՞ւր:

— Հենց այնտեղ, որտեղ հիմա կանգնած ես:

— Վա՜հ,— զարմացավ Հասմիկը:

Երևանի № 131 դպրոցի դրուժինայի անունը հաճախ է հիշատակվում հանրապետական, քաղաքային ու շրջանային միջոցառումների ժամանակ: Պիոներական օրինակելի գործերի համար դրուժինայի անունը գրանցվել է համամիութենական պիոներական կազմակերպության Պատվո գրքում:

«Միլիոն՝ հայրենիքին», «Բամ-ին՝ պիոներական գնացքներ» օպերացիաների ուղղությամբ կատարած աշխատանքի՝ հավաքած մեծաքանակ մետաղի ջարդոնի ու թղթի թափոնի համար դրուժինան արժանացավ ՀամԼԿԵՄ Կենտկոմի պատվոգրին:

Բարձր է նաև դրուժինայի առաջադիմությունը: Անցած ուսումնական տարին նրանք փակեցին 100 տոկոս առաջադիմությամբ:

Թե՛ դպրոցը, թե՛ դրուժինան կրում են բուլղար մեծ բանաստեղծ, հայ ժողովրդի ջերմ բարեկամ Պեյո Յավորովի անունը: Յավորովը հայտնի է որպես հեղափոխական շարժման և ճնշված ժողովուրդների երգիչ: Նա զենքով ու գրչով կռվել է Բուլղարիայում հեղա-

Պիոներները ողջ երկրի հավատարիմ են
գործին ԼԵՆԻՆԻ

# ԱԶԳԵՎԱՅԻՆՆԵՐԸ

փոխության հաղթանակի, ժողովրդի վերածնության համար և համարվում է բուլղարական գրականության դասականներից մեկը:

Յավորովը շատ ջերմ բանաստեղծություններ է գրել թուրք բռնապետությունից հալածված տարագիր հայերի մասին.

Նրանք խղճալի վտարանդիներ, աննշան բեկոր
Դարերով խիզախ, այն մարտիրոս մի ժողովրդի.
Նրանք զավակներ՝ անվերջ ախարեկ, շղթայված մի մոր,
Սխրալի կռիվներ մեծ, աշխարհապահ մի գոտեմարտի.
Հայրենի հողից հեռու, հալածված՝ օտար երկնի տակ,
Հյուծված ու գունատ՝ հավաքված այստեղ, այս գորշ տնակում
Խմում են, ու լուռ նվվում է ցավից սրտի վերքը տաք,
Ու երգում են խուլ, ինչպես արցունքի միջից են երգում:

(«Հայերը» բանաստեղծությունից, 1899 թ.)

*7-րդ Ա դաս. ջոկատը Անհայտ զինվորի գերեզմանի մոտ դրոշը փոխանցում է 3-րդ Ա դասարանին*



# ՌԻԿԿԻ ՇԱՆ

ՄԱՐԳՈ ՂՈՒԿԱՍՅԱՆ

## 4. ՌԻԿԿԻՆ՝ ՕՏԱՐ ՄԻՋԱՎԱՅՐՈՒՄ



Արամը գրիպով հիվանդացավ: Լուսեղեն մայրիկն ասաց, որ այս մարոկկոյական թե կոնգոյական գրիպի հետևանքները սոսկալի են: Նույնիսկ մահացության դեպքեր են նկատվել: Երեք օր անկողնում պառկելը և օրը մի քանի անգամ անանուխով ու մեղրով թեյ խմելը խիստ անհրաժեշտ է:

— Ախր, որոշել էինք գյուղ գնալ,— ասում էին տղաները:

Ի պատասխան նրանց, Լուսեղեն մայրիկը գործածեց իր սիրած արտահայտությունը.

— Մարդը որոշում է, աստված՝ կատարում:

Անցավ ևս մեկ ամիս: Գյուղից եկողները հետաքրքիր լուրեր էին բերում: Հորեղբայրն ասաց, որ Ռիկկին

Սկիզբը՝ Պիոներ № 9, 10, 11

# ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ

խիստ հետաքրքրասերն է. հոտոտում ու զննում է ամեն ինչ, պպզում է մեղվի փեթակների առաջ ու նայում է դռնակին, որտեղից ներսուդուրս են անում մեղուները: Բայց միշտ բերանը բաց ,որ եթե հանկարծ մեղուն հարձակվի, կարողանա որսալ:

— Խաչեվարդ պապին զգուշացրի՞ր, որ ավելից վախենում է:

Հորեղբայրը ծիծաղեց.

— Այնտեղ ո՞վ է այգին ավլում. Ռիկկին ամբողջ օրը այգում է կամ էլ պապի ետևից անտառ է վազում, բայց մի բանից խիստ վախենում է:

— Ինչի՞ց:

— Խոզից,— ասաց հորեղբայրը:— Երբ խոզի վրա հաչում է, խոզը չի փախչում, այլ խռխռացնում է և դանդաղ գլուխը շրջում Ռիկկիի կողմը: Խոզը իր բութ, սառը հայացքով որ չի նայում, Ռիկկին հողմի պես սլանում է, կարծես ետևից հարամի է ընկել: Իսկ խոզը ալարում է նույնիսկ տեղից շարժվել:

— Իսկ որևէ մեկը վախենու՞մ է Ռիկկիից,— հետաքրքրվեցին:

— Գառների ու ուլերի հոգին հանում է: Դժբախտությունն այն է, որ ոչ միայն հարևանների, այլև մեր գառներին է հալածում: Սպիտակ գառնուկի ոտքը կծել էր: Ոչինչ, շուտով սեփականը օտարից կջոկի: Խաչեվարդ պապի կարծիքով ժամանակն էր, որ ինքն այդպիսի բակապահ շուն ունենար,— եզրափակեց հորեղբայրը:

Տղաները նայեցին իրար. ի՞նչ, բակապահ շու՞ն: Ռիկկին փոքստերյեր է. խնդրում ենք չվիրավորել և այն էլ ի՞նչ երևելի ցեղից...

Հորեղբայրը կարճ կապեց.

— Ֆոքստերյեր-Մոքստերյեր չըգիտեմ: Գնացեք տեսե՛ք: Խաչեվարդ պապը շան դունչը խուզել է և օր-օրի վարժեցնում է, որ իրեն օգնական դարձնի:

Ջղայնանալու տեղ չէր մնացել: Արամն ու Անդրանիկը ծիծաղում էին ու ծիծաղի միջից ասում.

— Դե ասա պապիկը Ռիկկիին այլանդակել է, էլի:

Հետո նրանք մտածեցին, որ մինչև իրենց գյուղ գնալը Ռիկկին լրիվ կվայրենանա և իրենց հրամանները այլևս չի կատարի:

Հորեղբայրը գնաց, բայց մի երկու աստիճան իջնելուց հետո, ետ եկավ.

— Հա, մոռացա ասեմ, ամպը որ գոռում է, Ռիկկին վազում է իր բնի մոտ: Դե գիտեք մեր սարերում ոնց են կայծակները շրխկում ու ամպերը գոռում: Ռիկկին խեղճանում է, բայց էլի բույնը չի մտնում, կարծես ուշադիր զննում է երկինքը ու ականջ դնում տրաք-տրաք եղող ամպերի ձայնին:

## ԽԵԼԱՀԵՂ ՈՒՐԱԽՈՒԹՅՈՒՆ

Արամն ու Անդրանիկը հրավիրեցին նաև Յողինարին և Տիգրանին: Մոտ հինգ օր նրանք մնալու էին Սպիտակ Կամուրջ գյուղում: Խաչեվարդ պապի տունը անտառի եզրին էր, իսկ անտառը... ուղղակի հեքիաթային մի վայր:

Գիշերը նրանք գնացին գնացքով: Տիգրանի քունը չէր տանում: Նա մըտածում էր Սպիտակ Կամուրջ գյուղի մասին, որտեղ մանուշակների հոտից մարդիկ կարող են արբենալ և որտեղ եթե ձեռքիդ բաց ափը դնես խոտերին, տակը մի քսան-երեսուն ծաղիկ կմնա: Նա նկատեց, որ Անդրանիկն էլ իր տեղում է շուռումուռ գալիս:

— Քնած չե՞ս,— հարցրեց:

— Չէ,— ասաց Անդրանիկը:

— Պապիդ անունը՝ Խաչեվարդ, իսկ տատի՞նդ,— հարցրեց Տիգրանը:

— Արևթագուհի,— ասաց Անդրանիկը:

— Խաչեվարդ, Արևթագուհի, դեռ մայրիկիդ անունն էլ՝ Լուսեղեն: Գեղեցիկ անուններ են, բայց առաջին անգամ եմ լսում:

— Մեր գյուղում ութ հարյուր տա-



բեկան մի գիրք կա՝ մագաղաթյա էջերով և պատկերազարդ: Այդ գիրքը «Նարեկ» է կոչվում: Տատս ասում է, որ այդ գրքի կողին շատ-շատ անուններ կան գրված: Բոլոր այն մարդկանց. անունները, որոնք ութ հարյուր տարվա մեջ սերնդից-սերունդ ժառանգել են գիրքը: Հենց որ մեր գյուղում երեխա է ծնվում, այդ գրքի հիշատակարաններից որևէ անուն են ընտրում:

Նրանք այնքան անհամբեր էին, որ էլ չսպասեցին ավտոբուսին: Բեռնատարի վարորդին ձեռքով նշան արեցին: Վարորդը նրանց վերցրեց, քանի որ անցնելու էր Սպիտակ Կամուրջ գյուղի միջով և թափքն էլ դատարկ էր: Տղաներն ուսապարկերը նետեցին թափքի մեջ, Յողինարին օգնեցին, որ բարձրանա:

Ոլորանում վարորդը դանդաղեցրեց ընթացքը: Ահա հնամենի մատուռը՝ մրից սևացած խաչքարով: Ուր որ է կերևա նաև գյուղը:

Վերջապես: Նրանք թփթփացրին խցիկի տանիքը: Այդտեղից մի տասը րոպեի ոտքի ճանապարհ էր մինչև Խաչեվարդ պապի տունը: Նրանք շալակներն առան ուսապարկերը, վարորդին շնորհակալություն հայտնեցին ու գնացին:

Գարնանային պարզ առավոտ էր: Օդը բուրավետ էր ու թափանցիկ: Խնձորենիներն այնքան առատ էին ծաղկել. կարծես շքեղ նորահարսեր լինեին, գլխներին ժանեկազարդ քող գցած: Այգիների արբեցնող բուրմունքը բռնել էր չորս բոլորը: Գյուղում ամեն ինչ այնպես մաքուր էր, այնպես գեղեցիկ, թվում էր, թե աներևույթ մի ձեռք լվացել-մաքրել էր երկինքը, օդը, ծառերը, առվի ափերի թարմ խոտը, ջրի հոսանքին տրված ուռիների դալար ճյուղերը: Եվ ի՜նչ խաղաղություն էր: Մեծ քաղաքի աղմուկից ու ծխահոտ օդից հետո, Սպիտակ Կամուրջն իսկական դրախտավայր էր: Յողինարի և Տիգրանի աչքում այդ փոքր գյուղն այնքան երևելի մի բնակավայր էր, քանի որ այնտեղ էր գտնվում ութ հարյուր տարեկան գիրքը: Մի քիչ էլ գնացին: Երևաց Խաչեվարդ պապի դարպասը՝ կիսաբաց:

— Ռիկկի՜,— բղավեց Արամը,— որտե՞ղ ես, Ռիկկի՜:

Այդ ժամանակ նրանք դարպասի առաջ էին և ներս էին նայում: Մեկ էլ տան ետևից Ռիկկին դուրս պրծավ: Պա՜հ, պա՜հ, պա՜հ. տեսնելու բան էր, թե Ռիկկին ինչպես խառնվեց իրար: Ո՞վ էր ասում, թե մոռացած կլինի: Ուրախությունից քիչ էր մնում գժվի: Թռչկոտում էր, մեկ թաթերը Անդրանիկի կրծքին էր դնում, մեկ Տիգրանի կոշիկն էր լիզում, Արամն ուզում էր գլուխը շոյել, բայց Ռիկկին ռետինե գնդակի նման անդադար թռչկոտում էր, պտույտներ գործում:

Խաչեվարդ պապը մեղվանոցից եկել էր ու հեռու կանգնել: Նա մնացել էր զարմացած:

— Այ քեզ բա՜ն, որ էս շունը ձեզ էսքան սիրում էր, ու՞ր էիք դռնեդուռ գցում:

Արևթագուհի տատը՝ «Կորի՛,— ասում էր,— կորի՛, ա՜յ շուն, թող մի այս երեխաներից կարոտս առնեմ»: Սակայն Խաչեվարդ պապին ու Արևթագուհի տատին պատասխանող չըկար: Քաղաքից եկածները կանգնել էին շրջանաձև ու նրանց կենտրոնում Ռիկկին՝ խելակորույս իր սիրով, ճարպկությունները ցուցադրելու իր տաղանդով:

— Դե՛, դե՛, դե՛. խելքներդ գլուխներդ հավաքեք. բավական է այդ անլեզու անասունին գժվացնեք: Գնացեք նե՛րս, մեղվի ձագը փախել է, պետք է ետ բերեմ:

— Վա՜յ, վա՜յ, վա՜յ,— ձեռքերն իրար շփեց Յողինարը,— երբեք չեմ

տեսել, թե ինչպես են փախած ձագին ետ բերում:

Ոչ մեկը հոգնածություն չէր զգում: Նրանք լիաթոք շնչում էին ու կարծես մաքուր, թարմ օդի հետ ուժերը վերականգնող մանանա էին ներծծում: Ուսապարկերը թողնելով դռան մոտ, նրանք գնացին մեղվանոցի կողմը: Դեղին և կապույտ փեթակները շարված էին կողք-կողքի ու եթե վերևից նայելու լինեին, կթվար, թե համատարած կանաչի մեջ արտասովոր մեծ ծաղիկներ են բացվել: Անհամար մեղուները ղզզում էին օդում, ծաղիկների վրա, փեթակների դռնակների առաջ: Մեղվանոցում համերգ էր: Բայց քաղաքից եկածները չգիտեին, թե այդ միալար մեղեդու մեջ դեռ ինչ սքանչելի և արտասովոր երգ էր հնչելու: Խաչեվարդ պապը ծխարարն էր կարգի բերում:

— Մոտ չգաք,— ասում էր նա,— մոտ չգաք, թե չէ ձիավոր էլ դառնանք, ձագի ետևից չենք հասնի:

Նա վառեց ծխարարի մեջ լցված փթիրը ու կարճ խողովակի ցնցուղաձև քթից ծուխ փչեց: Վարժ շարժումով նա ետուառաջ էր անում փուքսը, ու ծուխը գնալով շատանում էր: Մեղվանոցում թանձրանում էր կապույտ շղարշը: Չորսըն էլ (ու նրանց հետ էլ Ռիկկի շունը) մեղուներից վախենալով հեռու կանգնած հետևում էին պապին: Պապը դիմակը իջեցրեց, վերցրեց ձագակալն ու գնաց դեպի ալոճենու ծառը: Նա ձեռքով նշան արեց՝ այս կողմ նայեք: Եվ այդ ժամանակ նրանք ականատես եղան արտասովոր պատկերի: Ալոճենու ճյուղից կախված էր մի հսկա «ողկույզ» մեղու: Ա՜յ քեզ հրաշք: Ինչպե՞ս են մեղուները կառչել իրար ու այդպես ողկույզաձև կախվել: Խաչեվարդ պապը ծխարարը մոտեցրեց մեղուներին ու սկսեց փչել: Ծուխը արբեցրեց փախստական մեղուներին, ու նրանք փոքրիկ ամպի նման պոկվեցին ճյուղից: Երևի մի պահ հապաղեց պապը: Եվ հենց այդ էլ եղավ պատճառը, որ հյուրերը ականատես եղան «հրաշքին»: Մինչ պապը հարմարեցնում էր ձագակալը, պարսը պոկվեց ճյուղից: Կարծես կախարդական մի ուժ օդում ֆռռացնում էր սևամած, բզզացող «մաքոքը», բաղկացած տասնյակ հազարավոր մեղուներից: Կարծես կենտրոնաձիգ մի ուժ չէր թողնում, որ ցիրուցան լինեն: Այլևս չէր լսվում քիչ առաջ մեղվանոցում տարածված, դուրեկան, միալար երգը, քանի որ փախած մեղվապարսի բզզոցը խլացրել էր ամեն ինչ:

Զզզը, զզզը՜...

Զզզը, զզզը՜...

Խաչեվարդ պապը նորից վերցրեց ծխարարն ու կապտավուն քուլաները փչեց մեղուների վրա: Հետո նա մոտեցրեց ձագակալն ու հեռվից դիտողների աչքերի առաջ մեղուն ներհոսեց ծղոտե զամբյուղը: Խաչեվարդ պապը փակեց ցանցավոր կափարիչն ու գնաց դատարկ արկղի կողմը: Տիգրանը, Արամը, Յոդինարն ու Անդրանիկը անքթիթ նայում էին: Պապը ձագակալը մոտեցրեց դատարկ արկղին ու ձեռքով մեղուներին ետ տվեց: Նա գտավ մայր մեղվին ու գցեց փեթակի մեջ: Այլևս դժվարություն չկար: Հազարավոր մեղուները բզզոցով լցվեցին փեթակը: Կարծես ներսից ձգողական մի ուժ քաշում, ներծծում էր նրանց:

— Վերջապե՜ս:

Պապը ուղղվեց ու ձեռքով շփեց գոտկատեղը: Քրտինքը ճակատից հո-

*Նկ. ԱՆՈՒՇ ՏԵՐ-ՄԻՆԱՍՅԱՆԻ*



սելով լցվում էր աչքերը: Հագուստը կպել էր մարմնին: Դեղին ու կապույտ փեթակների կողքով անցնելիս բարձրացրեց սև դիմակը ու նոր միայն ուշադրություն դարձրեց արձանների նրման անշարժ կանգնած քաղաքաբնակներին:

— Տեսա՞ք, ինչ օյին հանեցին գլխիս: Թե որ մի քիչ ուշ նկատեի, տռնևներից խունկ էի ծխելու,— ասաց նա:

Իսկ «քաղաքաբնակները» հմայված էին, որովհետև նրանք ականատես էին եղել բնության մի գեղեցիկ երևույթի:

Ալ թե ժամանակին էին տեղ հասնե՜լ: Այլապես փախած մեղվապարսի «ոբսի» երազում էլ ականատես չէին լինի:

Զզզը, զզզը՜...

Զզզը, զզզը՜...

Նրանց ականջներում զնգում էր մեծ երգչախումբը: Դա համարյա նրման էր այն տեսարանին, որին նրանք ականատես եղան անցած աշնանը՝ բացօթյա «Առագաստ» սրճրանից: Նրանց ականջին հասավ հարյուրավոր զանգակներից ծնվող երգի մեղմ արձագանքը: Ձայնը կամաց-կամաց որոշակի և ուժեղ դարձավ: Այս ի՞նչ է, որտեղի՞ց է գալիս: Զարմացած չորս բոլորն էին նայում, երբ մեկը բղավեց. «Երկնքի՜ն նայեք, երկնքի՜ն նայեք»: Ու բազմաթիվ մարդիկ նայեցին իրենց գլխավերևը:

Բարձր, բարձր ճախրում էր կռունկների երամը:

Երկնքի կապույտ, թափանցիկ կըտավին ուրվագծվում էր մեծ եռանկյունին, որը հարյուրավոր թռչուններից էր բաղկացած: Ի՜նչ արտասովոր գեղեցկություն: Ի՜նչ բախտ, որ նրանք դըրսում էին, լճափնյա այդ սրճարանում, որի շուրջը զբոսնող բազմաթիվ երեխաներ ու մեծահասակներ գամվել էին տեղերում և հայացքները հառել դեպի երկինք:

Կռունկների երամը թռչում էր հարավ, և թևերի ալեբախությամբ և արծաթահնչյուն երգով հրաժեշտ էր տալիս մնացողներին: Եվ իր թևև ու գեղանի սավերով հպվում այն ամենին՝ մարդկանց, տներին, այգիներին, ամեն-ամեն ինչի, որ մնում էր ցածում:

*(Շարունակելի)*




Ի՜նչ ասեմ Ձեզ, մայր՜, ի՜նչ ասեմ Ձեզ,
Կարդացել եք, ճիշտ է, գրքեր բազում,
Բայց թե Շեքսպիրի մասին խոսել
Ձեզ չի՜ սազում, մայր՜, Ձեզ չի՜ սազում:

Դուք նման եք տխուր Ձեր գործերին,
Մեն-մի խնդիր ունեք և՜ բարդ, և՜ մութ՝
Ձեր մեծ եկամուտը ավելացնել էլի
Ու ավելի դառնալ ցոփ ու հարուստ:

Ձեր սեղանին՝ երկրի ամեն կողմից
Ուտելիքներ ընտիր ու բազմազան,
Խոհարարն էլ հատուկ է՝ Փարիզից,
Ծառայանդիայից է Ձեր ճարպիկ ծառան:

Մայր՜, Ձեր այգին է սքանչելի,
Թռչուններն են այնտեղ ողջ օրն երգում,
Եվ գույներն են նրանց փետուրների
Կանաչ ճյուղերի մեջ փայլատակում:

Բայց խավար է Ձեր շուրջն իջել, մայր՜,
Այսքան սառը ձանձրույթ Ձեզ որտեղի՞ց,
Չնչինությունն է Ձեզ տիրել այսօր
Ու պինդ շղթայել է Ձեր ձեռքերից:

## ՄԻ՞ԹԵ

Գութանը հողն է վարում ինքն իրեն,
Եվ սերմն է հողում ցանվում ինքն իրեն,
Մնում է միայն բերքահավաքը:
Չեք հավատում, չէ՞, տարօրինա՞կ է:

Սակայն այդ մասին ու՞մ հոգն է այստեղ,
Հանգիստ զբոսնում, գնում են թերթեր,
Կամ գնացքներով, ինքնաթիռներով
Սուրում են երկրի տարբեր կողմերով...





# ՄՈՐԻՍ ՔԱՐԵՄ

«Պոետների արքա» այսպես էին անվանում Փարիզում բելգիացի մանկագիր Մորիս Քարեմին:
Տպագրում ենք նրա բանաստեղծություններից մի քանիսը:

## ՓԱՅՏԵ ՈՏՔԵՐԸ

Թե փայտե ոտքեր են ոտքերի փոխարեն,
Տխուր է մայր հողին քայլելը,
Է՜հ, շատ է, շա՜տ ծանր (զինվորները գիտեն)
Հաշմանդամի կյանքով ապրելը:

Մեր փայտե ոտքերը երբ տնկեն իրար մոտ՝
Մի այգի կստացվի ընդարձակ,
Կամ շարք-շարք, երբ շարեն ճամփեզրին
աղմկոտ,

Ամեն ոտք կդառնա կանաչ ծառ:

Այն հողում, որտեղ որ պատերազմ է եղել,
Երբ տնկեն մեր փայտե ոտքերը,
Մի հզոր, նոր անտառ կսկսի աղմկել՝
Թափ տալով իր ճյուղե ձեռքերը...

Արտասուքը միայն բավական չի լինի,
Չի կարող անտառը ոռոգել,
Որտեղի՞ց այնքան ուժ այս հոգնած փայտերին,
Որ հողում արմատներ արձակեն...

## ՄԻԵՎՆՈՒՅՆԸ ՉԷ...

Եվ ինչե՞ր ասես նրանք չեն կարդում,
Եվ ինչե՞ր չկան այս մոլորակում:

Սև գործեր անող հանցագործներ կան
Եվ ջրհեղեղներ ու աղետներ կան...
Իսկ ո՞վ է այնտեղ վարում ու ցանում...
Է՛հ, միևնույն չէ՞, հաց կա խանութում:

*Ռուս. թարգմ. Մ. ՌՍԿԱՆՅԱՆԸ*



ՓՈՔՐԻԿՆԵՐԻ ՀԱՄԱՐ

# ՄԻԱՄԻՏ ԱՂՎԵՍԸ



ԷԴՎԱՐԴ ՄԻԼԻՏՈՆՅԱՆ

Զանգը խփեց կաչաղակը,
Առավոտյան ժամը ութն է,
Բացատի մեջ աղաղակ է
Եվ աղմուկ է, ի՜նչ աղմուկ է:

Գազանները են գալիս դպրոց
Եվ գալիս են թռչունները,
Բարձրացել է հարայ-հրոց,
Ծտապում են կապիկները:

Դասն է այսօր խաբեության
Եվ խորամանկ արարքների,
Գայլ դասատուն երեկ ասաց.
Որ ոչ ոքի նա չի ների:

Ով որ դասը չպատրաստած՝
Դասարանի դուռը բացի,
Նա կստանա երեք ապտակ
Եվ մի «երկուս» ու մի քացի:

Գայլ դասատուն նայում է խիստ

Օրագիրը բացեց դանդաղ,
Նշանակեց մի մեծ «երկուս»,
Ապա ելավ պիջակն հանեց
Եվ աղվեսին, ասածի պես,
Երեք ապտակ և մի քացի նա
պարգևեց:
— Ա՜յ քեզ աղվես հիմար ու խեղճ,—
Ծիծաղում են փասիան ու ծիտ,
Դոփդոփում է կատուն անխիղճ
Կոշիկներով երկարաճիտ:

Լուրն այս գնաց ու տարածվեց
Անտառով մեկ, լեռներով մեկ
Հասավ գյուղեր ու ագարակ,
Ու քաղաքներ հասավ մեծ-մեծ:

Հանգիստ չուներ աղվեսը մեր,
Ուր գնում էր՝ հարցումն էր նույն.
Ճի՞շտ է, որ նա խաբեության
Դասի ... «...» ... ...մ:

Մի օր էլ մի փոքրիկ աքլոր
Ասաց.— Պիտի ինքս տեսնեմ
Կա՞ այդպիսի մի սևավոր:

Գնաց հասավ անտառամեջ
Ում հարցրեց՝ ճամփան ասին,
Գնաց գտավ այդ աղվեսին:

— Բարի օ՜ր քեզ,
Աղա՛ աղվես:
— Է՜, բարի օ՜ր,
Փոքրի՜կ աքլոր:
— Քեռի՛ աղվես,
Եկել եմ, որ
Ինքս տեսնեմ
Օրագիրն այն
Եվ «երկուսը»,
Որի մասին
...

— Թե որ ... շատ ես ուզում,

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

Դասարանի կուռ շարքերին
Եվ հարցեր է տալիս հանգիստ
Երկտարեցի առյուծներին:

Բայց ժպտում է նա գոհունակ
Առյուծների պատասխանից,
Ապա հարցեր տալիս դժվար
Կապիկներին գերազանցիկ:

Խունջիկ-մունջիկ վայրի կատուն
Խաբեության մասին այնպես
Խելոք խոսեց և իմաստուն,
Որ ծափ տվին արջ ու աղվես:

Ա՛յ դու աղվես ծափահարող,
Ապա խոսի՛ր դու քո փորձից.
Ու՞մ հարցնեմ, նա չի կարող
Պատասխանել լավ քեզանից:
— Չեմ սովորել դասը այսօր,—
Աղվեսն ասաց քթի տակից:

Թռչունները կչկչացին,
Կապիկները քահ-քահ արին,
Նապաստակը ետ շրջվեց,
Աչքով արեց լուռ ճագարին:

— Օրագիրը դե այստե՛ղ բեր,
Մոտի՛կ արի, մեր քա՛ջ հերոս,—
Խոսեց գայլը, և անհաբեկ
Նայում էին փիղ ու արոս:



Խնդրեմ, մտի՛ր. այն թփի տակ.
Կա պայուսակ
Եվ նրա մեջ՝ մի օրագիր:

Թերթերը բա՛ց,
Եվ ուզածդ այնտեղ գտի՛ր:

Աքլորն իսկույն թռավ այնտեղ,
Իսկ ետևից քմծիծաղով
Ցատկեց աղվեսն ու...
Փետուրներն աքաղաղի
Փախչում էին և՛ վե՛ր, և՛ վար,
Իսկ բերանը աղվեսիկի
Դարձել էր մի գունանկար:

Լուրն այս առան արջ ու հովազ
Եվ վազեվազ տարածեցին:
Լուրն այս առան գայլ ու վարազ
Եվ վազեվազ տարածեցին:

Իսկ սոխակը երգիչ գուսան,
Ծառի ճյուղին գտած մուսան,
Հորինեց ա՛յ այսպիսի երգ.
— Մի՛ հավատացեք փոքրիկ աղվեսին,
Նրա ստացած ծեծ ու «երկուսին»...
Թե չե՞ք հավատում, նայե՛ք թփի տակ՝
Օրագրի մոտ նրա թանաքոտ
Հազար ճագար ու հազար նապաստակ
Թողել են իրենց մորթին արյունոտ:
Մի՛ հավատացեք խարդախ աղվեսին,
Նրա ստացած ծեծ ու «երկուսին»:



Լրացավ ՎԱՐՈՒԺԱՆ ՆԱԼԲԱՆԴՅԱՆԻ ծննդյան 50-ամյակը: Ամսագրի ընթերցողների անունից շնորհավորում ենք սիրելի մանկագրին և ցանկանում ստեղծագործական նոր հաջողություններ:

# Հին ու նոր կռիվ

Տղան մի տուն ուներ: Այդ տանը նրա հետ ապրում էին Շունը և Կատուն: Նրանք այնքան անհաշտ էին ապրում, որ տղան շարունակ ստիպված էր լինում վիրակապել մեկ Շան պոչը, մեկ Կատվի դունչը, մեկ Շան ականջը, մեկ Կատվի թաթը: Եվ ահա նա գնաց խորհուրդ հարցրեց խաղալիքների խանութի վարիչից:

Վարիչը մտածեց, խորհեց, խորհրդածեց, վերջը՝ ցուցափեղկից հանեց երկու տիկնիկ, տվեց Տղային և ասաց.

— Տիկնիկ կատուն նվիրիր Շանը, տիկնիկ շունը նվիրիր Կատվին:

Ռետինե տիկնիկներ էին: Դրանցից յուրաքանչյուրի տափակ մակերեսները ծածկված էին թավշանման, աղվամազոտ հյուսվածքով: Այդ տիկնիկներից մեկի վրա շուն էր նկարված, մյուսի վրա՝ կատու: Նրանցից ամեն մեկի պոչի ծայրին մի կոճակ կար: Հարկավոր էր այդ կոճակը հանել, փչել ռետինե տիկնիկի մեջ և ապա նորից կոճակն ամրացնել պոչի ծայրին: Այդ դեպքում կստացվեր թմբլիկ շուն և կատու: Տղան իր Շանը և Կատվին բացատրեց, թե ինչպես վարվեն տիկնիկների հետ, ապա՝ բաժանեց նվերները:

Նրանցից ամեն մեկն սկսեց փչել իր ստացած տիկնիկը: Եվ ահա Կատուն սկսեց խրատել իր տիկնիկ շանը.

— Տե՛ս, քեզ խելոք կպահես, հատակը չկեղտոտես, աղմուկ չբարձրացնես:

Շունն էլ իր հերթին խրատում էր տիկնիկ կատվին.

— Տե՛ս, քեզ խելոք կպահես, կաթ ու միս չգողանաս, աման-չաման չջարդես:

Հետո Կատուն թաթով խփեց տիկնիկ շան դնչին և մռլտաց.

— Կեղտո՛տ շուն, քեզ քանի՞ անգամ եմ ասել, որ առավոտյան լվանաս ատամներդ:

Շունն էլ գլխով խփեց գլորեց տիկնիկ կատվին և նրան սաստեց.

— Հերիք չէ՞ թափառես հարևանների կտուրների վրա: Դու տուն չունե՞ս, ի՞նչ է:

— Դու տիկնիկ կատվի հետ անարդարացի ես վարվում,— ասաց Կատուն Շանը:

— Դու տիկնիկ շան հետ անարդարացի ես վարվում,— ասաց Շունը Կատվին:

Շունը և Կատուն երկակի վերաբերմունք ունեին դեպի տիկնիկները: Շունը սիրում էր իր տիկնիկին, որովհետև իրենն էր, բայց, և չէր սիրում, որովհետև Կատվի պատկերով էր: Կատուն սիրում էր իր տիկնիկին, որովհետև իրենն էր, բայց և չէր սիրում,

որովհետև Շան պատկերով էր: Եվ ընդհակառակը՝ շունը սիրում էր Կատվի տիկնիկին, որովհետև այդ իր պատկերն էր, բայց և չէր սիրում, որովհետև նա Կատվին էր պատկանում: Կատուն նույնպես սիրում էր Շան տիկնիկին, որովհետև այդ իր պատկերն էր, բայց և չէր սիրում, որովհետև նա Շանն էր պատկանում:

Եվ ահա երբ Շունը քնեց, Կատուն զգույշ մոտեցավ նրան և հանեց տիկնիկի պոչի կոճակը: Տիկնիկ կատվի փուքսն իջավ, և նա տափակեց: Շունը ցնցվելով արթնացավ և Կատվի երեսին հաչեց այն բոլոր վատ խոսքերը, որ նա սովորել էր հարևան թաղի փողոցային շներից:

Շունը նորից փչեց իր տիկնիկ կատվին, նորից նրան առողջ ու թմբլիկ տեսք տվեց: Բայց չէր հանգստանա, մինչև վրեժը չլուծեր: Եվ մի օր հարձակվեց Կատվին պատկանող շան վրա, ուժեղ կծեց նրա թաթը և պայթեցրեց: Կատուն էլ իր հերթին Շանը պատկանող տիկնիկ կատվին կծեց ու ճանկռեց:

Հետո երկուսն էլ շփոթված էին ու տխուր:

— Ա՜խ,— հառաչում էր Շունը,— տիկնիկ կատուն իր շունչը փչեց:

— Ա՜խ— հառաչում էր Կատուն,— տիկնիկ շունը իր շունչը փչեց:

— Վա՜խ,— տրտնջում էր Շունը,— պատկերս պատռվեց, աղավաղվեց:

— Վա՜խ,— տրտնջում էր Կատուն,— իմ պատկերն էլ պատռվեց, աղավաղվեց:

Եվ երկուսն էլ ամաչում էին իրենց վեճերի, կռիվների համար:

— Հիմա հասկացա՞ք,— գլուխը թափ տվեց Տղան:

Նա սոսնձեց նրանց պատռված տիկնիկները: Շունն իր շնչով նորից լցրեց տիկնիկ կատվին, Կատուն իր շնչով նորից լցրեց տիկնիկ շանը: Եվ այդ օրվանից նրանք ապրեցին հաշտ ու խաղաղ: Գրկում էին իրենց տիկնիկներին ու քնում իրար կողքի:

*Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ*



**Գիտե՞ք որ...**

# ԹՌՉՈՒՆՆԵՐԸ ԳԻՏԵ՞Ն ԿԱՐԵԼ ԵՎ ՀՅՈՒՍԵԼ

Հնդկաստանում, Ցեյլոնում, Աֆրիկայում, Իսպանիայում և Հունաստանում ապրում են ոչ մեծ թռչուններ, որոնց դերձակներ են կոչում: Նրանք կատարյալ տիրապետում են կարելու արվեստին: Կտուցը ծառայում է նրանց որպես ասեղ, իսկ թելի փոխարեն նրանք օգտագործում են սարդոստայնը կամ էլ բույսերի աղվամազը, որը հենց իրենք էլ թելի պես ոլորում են: Կարով այդ թռչուններն զբաղվում են ընտանիք կազմելու ժամանակ, երբ անհրաժեշտ է լինում ապագա ձագուկների համար բույն ստեղծել: Իրենց բները դերձակները սովորաբար գետնից ոչ շատ բարձր են կառուցում:

Նրանք սկզբում զննում են ծառի տերևները: Հետո, ընտրելով մեկ կամ երկու, երբեմն էլ մի քանի իրար կողքի կախված մեծ տերև, կտուցով անցքեր են բացում և դրանց միջով կուռ առ կուռ անցկացնում են թելը: Հետո թելը



ձգում են: Ստացվում է յուրօրինակ մի տոպրակ: Հիմա արդեն պետք է այդ տոպրակի մեջ բամբակի, բրդի կտորտանք, բմբուլ հավաքել, որպեսզի բույնը փափուկ լինի:

Մեր ճնճղուկների մոտիկ ազգակիցները՝ հյուսող-գործողները, որոնք բընակվում են Աֆրիկայում, Հարավային Ասիայում, Մադագասկարում և Արաբիայում, դերձակներից տարբերվում են նրանով, որ իրենց բները հյուսում են կտուցներով բույսերից դուրս քաշած թելիկներից: Ըստ որում, ամեն ինչ անում են կարգուկանոնով, գործողություն գործողության ետևից. օղակներ են գցում, հանգույցներ են ձգում: Նրանց բները ամենատարբեր ձև ունեն. գնդի, շշի, երկարավուն տոպրակի:

# ԻՆՉՈ՞Վ Է ՕԳՏԱԿԱՐ ՄԱՄՈՒՌԸ

Խոնավ անտառներում, լեռներում, իսկ ավելի հաճախ ճահիճներում աճում է սֆագնում կոչվող անբարետես մամուռի մի տեսակ: Բարակ ցողունի վրա՝ տերևիկների մի փունջ, իսկ գագաթներին՝ ավելի կարճ տերևիկներից բաղկացած փնջիկներ, որոնք պարուրված են սպորներով լի կարմիր գնդիկներով: «Սֆագնում» հունարեն սպունգ է նշանակում: Մամուռին այդպես են անվանել, որովհետև նրա տերևների բջիջների մեծ մասը օդով է լցված և ջուր ծըծելու հատկություն ունի: Սֆագնումը իր քաշը կարող է ավելացնել 25—30 անգամ: Սովորական խոնավածուծ բամբակի հատկությունները մամուռի հետ համեմատած աղքատ են՝ բամբակը չորս անգամ պակաս է ջուր ներծծում:



Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ

Ափագնումի հենց այդ հատկության վրա էլ մարդիկ շատ հին ժամանակներից ուշադրություն են դարձրել: Անգլիայում այն որպես վիրակապ են օգտագործել դեռ 11-րդ դարում: Դժվար է ասել, թե որքան մարդկանց կյանք է նրանով փրկվել: Անտառից կամ ճահիճներից չերտերով հավաքած մաքուր, չորացրած մամուռը բամբակի փոխարեն էին օգտագործում, ափագնումառլյալե վիրակապեր էին պատրաստում և քաղաքացիական պատերազմի ժամանակ կարմիրբանակայինների վերքերի վրա էին դնում: Այն օգտագործում էին նաև Հայրենական մեծ պատերազմի ժամանակ: Նրանցից հատկապես օգտվում էին պարտիզանները: Ափագնումը բարձր է գնահատվում նաև նրա համար, որ իր մեջ հականեխիչ նյութ՝ ափագնոլ է պարունակում:

Ափագնումը մի այլ օգտակար հատկություն էլ ունի: Այնտեղ որտեղ ափագնում շատ է աճում, տարիներ անց տորֆի շերտեր են գոյանում:

# ԻՆՉՊԵ՞Ս ԵՆ ՄՐՋՅՈՒՆՆԵՐՆ ԻՄԱՆՈՒՄ ԳԱՐՆԱՆ ԳԱԼԸ

Ձմռանը մրջյունները մրջնանոցի տակ իրենց համար տաք բնակատեղի են պատրաստում: Ջերմաստիճանն այստեղ համարյա միշտ միևնույնն է: Մի մեծ գունդ կազմելով, մրջնային ամբողջ բնակչությունը (երեք-չորս միլիոն անհատ) սպասում է գարնան գալուն:

Մրջյուններն իրենց «տաքության համբավաբերներն» ունեն: Սրանք ավելի ցրտադիմացկուն են, քան մյուսները և անընդհատ վեր-վար են անում ձմեռային բնակատեղիի և մրջնանոցի մակերեսի միջև: Երբ արեգակն սկսում է տաքացնել, այս մրջյունները դուրս են գալիս տաքանալու: Երբ նրանք վերադառնում են, ձմեռային բնակատեղիի ջերմաստիճանը բարձրանում է այս խուզարկու մրջյունների մարմնի ջերմաստիճանի հաշվին: Աստիճանաբար մյուս մրջյուններն էլ են սկսում ակտիվանալ: Որքան արեգակն ուժեղ է տաքացնում, այնքան շատ մրջյուն է սկսում դուրս գալ տաքանալու: Վերջիվերջո մրջնանոցում ջերմաստիճանն այնքան է բարձրանում, որ ամբողջ բնակչությունը դուրս է գալիս և զբաղվում իր մրջնային գործերով:

Թարգմ. Ա. ՄԱՆԱՍՅԱՆԻ





# ԹՈՒԹԱԿՆԵՐԸ

ՄԱՆՈՒԿ ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ

Ձմռանը Վահագնի նշագեղձերը հեռացրեցին, և նա ստիպված էր հիվանդանոցից հետո մի քանի օր տանը մնալ: Որպեսզի շատ չտխրի՝ հայրիկը նրա համար խանութից մի զույգ թութակ գնեց: Շատ գեղեցիկ թռչուններ էին. արուն երկնագույն-կապույտ էր, թևերը հեռավոր ամպի ծվենի պես սպիտակ, էգը՝ դեղնականաչ: Վահագնը երբեք նման թռչուններ չէր տեսել և շատ ուրախացավ ու զարմացավ. մի՞թե այսպիսի թռչուններ էլ կան աշխարհում: Իսկ թութակները, որ վանդակում էին ծնվել և խանութից դուրս ուրիշ աշխարհ չգիտեին, նույնպես շատ զարմացան: Նրանք նայում էին սենյակի պատերին փակցված գորգին, տարբեր գույներով ներկված պատերին, արևի շողերն իրենց մեջ բեկբեկող բյուրեղապակյա բաժակներին ու մտածում՝ մի՞թե խանութից ու վանդակից բացի ուրիշ աշխարհ էլ կա աշխարհում:

Նրանց զարմանքը տևեց մի քանի օր, հետո վարժվեցին իրար, և թութակների ծլվլոցը, որ սկզբում Վահագնին զարմանահրաշ մի բան էր թվում, այնքան նույնությամբ կրկնվեց, որ սկսեց ձանձրացնել նրան: Նա դպրոցից տուն էր գալիս, շտապ թարմացնում վանդակում դրված փոքրիկ ամանների միջի ջուրն ու կուտը, մատը թափահարում եղբայր Տիգրանի ու քույրիկ Աննայի վրա՝ չլինի՞ հանկարծ վանդակին ձեռք տան, և սահնակն առած՝ իրեն նետում էր բակ:

Շուտով գարուն եկավ, և գարնան մի պայծառ օր մայրիկը որոշեց թութակներին դուրս բերել մաքուր օդի: Նա վանդակը լուսամուտից հանեց, կախեց լվացք չորացնելու պարանից: Ա՜յ թե արմանք-զարմանք եղավ թութակների համար... Նրանք պտտում էին գլուխները, ճպճպացնում աչքերը, վանդակի մի ճյուղից մյուսն էին իրենց գցում, նայում նոր տերևակալած ծառերին, վրայի ճնճղուկներին, բակում կանգնեցված խայտաբղետ մեքենաներին, բակում թռչկոտող երեխաներին ու սրտապատառ հայտնում իրար. «Սենյակից ու վանդակից բացի, ուրիշ աշխարհ էլ կա աշխարհում»...

Իրիկնադեմին, երբ մայրիկը նրանց տուն տարավ, նրանք քնելուց առաջ սովորականից ավելի երկար շատախոսեցին:

— Անհանգիստ են,— ասաց պապիկը:

— Արև էր, տաք էր, ամբողջ օրը դրսում էին,— ասաց մայրիկը:

Վահագնը, Աննան, Տիգրանը, որ հեռուստացույց էին նայում, նույնիսկ չզգացին թութակների ուրախությունը:

Ի՞նչ իմանային, որ թութակներն իրար խլացնելով պատմում էին այդ օրվա բակում կատարված ողջ անցուդարձը՝ սկսած ճնճղուկներից, բակն ավլող գույնզգույն շորերով աղջկանից մինչև ճիչ-աղմուկով ֆուտբոլ խաղացող երեխաները, մինչև մեքենաների ականջ ծակող ազդանշանները... Հաջորդ օրը նորից մայ-

րիկը նրանց վանդակը դուրս հանեց: Ճնճղուկները սկզբում թութակներից վախենում էին, քիչ անց ընտելացան, գալիս, նստում էին վանդակին, իրենց աղմուկով լցնում թութակներին, ապա չամաչելով ուտում նրանց կուտը, երբեմն էլ կտցահարում, ցավեցնում նրանց ու հետո թռչում, կանգնում դիմացի ծառին և տնազ անում: Չէ՛, թութակներին տխրեցնողը ճնճղուկների անպատկառությունը չէր: Վանդակին սովոր այդ թռչունները հիմա ատում էին իրենց վանդակը և երազում էին ճնճղուկների պես թռչել: Մի քանի օր անց ճնճղուկներին միացան ծիծեռնակները և թութակների երազանքը ծիծեռնակների հետ վեր ճախրեց: Շուտով էգ թութակը ձուածեց և թռիչքն ու երազանքը մոռացած՝ թուխս նստեց: Իսկ արուն՝ ոչ, նրա աչքը չէր կտրվում շուրջ բոլորը պտտվող ճնճղուկներից ու ծիծեռնակներից: Այնպես պատահեց, որ օրերից մի օր մայրիկը կուտ տալուց հետո մոռացավ փակել վանդակի դուռը: Արու թութակը նախ չհավատաց աչքերին, հետո չկարողացավ կսպել իրեն՝ ցատկեց կանգնեց բաց դռան մեջ ու... աշխարհին սպատ էր ու լի էր թևաքախումով ու թռիչքով, անծանոթ ու կանչող ձայներով: Արու թութակը թափահարեց թևերն ու թռավ: Կարճ, շատ կարճ տևեց նրա թռիչքը, բայց միևնույնն է, դա թռիչք էր դեմքին խփվող, խելագարեցնող օդի հոսանքով, թևերի պրկումով, սեփական ծանրության զգացումով: Փետուրների խռուռ տվող թրթռոցով, ազատության ակնթարթի ողջ գոյությամբ, ու վայելքով...

Արու թութակն ընկավ: Փորձեց նորից թռչել, թևերը դավաճանեցին ու



Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ

թռիչքի փոխարեն միայն ցատկ եղավ: Բակի տղաները բռնեցին նրան, բերեցին, հանձնեցին մայրիկին, ու մայրիկը նորից նրան վանդակը դրեց: Արու թութակը այդ օրը ոչինչ չկերավ ու լռեց:

— Ի՞նչ է պատահել,— երեկոյան հարցրեց պապիկը:— Ինչու՞ է արու թութակը թևաթափ ու տրխուր...

— Վանդակից թռել էր ընկել գետնին: Երևի տեղ է ցավում,— ասաց մայրիկը:

— Ոչ մի տեղ էլ չի ցավում, նա շուտով կըսատկի,— ասաց պապիկը:

— Ինչու՞ կսատկի,— տխրեց Վահագնը:

— Ով մի անգամ զգացել է թռիչքի վայելքը, վանդակին էլ չի դիմանա. կսատկի...

— Բաց թողնեմ, թող թռչեն գնան,— ասաց Վահագնը:— Ես համաձայն եմ, իմ թութակները չե՞ն...

— Վանդակում ծնված թութակը թռչել չի կարող, բալի՛կս,— ասաց պապիկը:

— Իսկ ճուտիկները որ ծնվեն՝ նրանք էլ չե՞ն թռչի, պապիկ...

— Չեն թռչի,— տխրաձայն ասաց պապիկը: Քանի՛ սերունդ է պետք, որ նրանք նորից թռչել սովորեն...

Արու թութակն, իսկապես, մի քանի օրից սատկեց: Վահագնը, Տիգրանը, Աննան լաց եղան: Հայրիկը խանութ գնաց, մի նոր արու թութակ գնեց, բերեց, գցեց վանդակի մեջ: Եվ նոր թութակը ամեն բանից անտեղյակ՝ իսկույն սկսեց շատախոսել...





# ՏԱՐԱԳՈՒՅՆ ՕՂԱԿՆԵՐԻ ՇՔԵՐԹԸ

## ՊԻԵՌ ԴԸ ԿՈՒԲԵՐՏԵՆ

Ո՞վ էր Պիեռ դը Կուբերտենը, որը գրեթե միայնակ կարողացավ երկրորդ կյանք պարգևել հին հունական օլիմպիական խաղերին և այն դարձնել համաշխարհային մարզական կյանքի ամենակարևոր իրադարձությունը:

Կուբերտենը ծնվել է 1863 թվականին, Փարիզում: Պատանի Պիեռը ժառանգական զինվորական կրթություն ստացավ Սեն-Սիրի համանուն դպրոցում, այնուհետև ավարտեց իրավաբանական կոլեջը, նաև Փարիզի պատմական գիտությունների դպրոցը: Նման բազմակողմանի զարգացածության, հարուստ գիտելիքների և բնածին տաղանդի շնորհիվ նա զինվորական ծառայության մեջ կարող էր շատ առաջ գնալ:

Սակայն Կուբերտենը առաջին հերթին հրաժարվեց հենց զինվորական գործից և իրեն ամբողջովին նվիրեց Ֆրանսիայում և ապա աշխարհում ֆիզիկական դաստիարակության գործին: Բարոնի տիտղոս կրող ընտանիքին, իհարկե, խորը հիասթափություն պատճառեց արու զավակի հրաժարվելը «ժառանգական մասնագիտությունից»: Այն ժամանակ միջին և բարձր դասը սպորտին արհամարհանքով էր վերաբերվում:

Քսանհինգը նոր բոլորած երիտասարդը 1888 թվականին ծանոթանալով Ոլիմպոս քաղաքի և օլիմպիական խաղերի պատմությանը, մտածեց, որ գերմանացիները պեղեցին Տրոյան, Ոլիմպոսը, իսկ ինչու՞ ֆրանսիացիները չեն կարող վերածնել օլիմպիական խաղերը և այն դարձնել համաշխարհային մարզական տոնահանդես:

Հինգ-վեց տարվա համառ պայքարից հետո, Կուբերտենին հաջողվեց տարբեր երկրների մարզական ընկերությունների ու առանձին անհատների ուշադրությունը հրավիրել այդ խնդրի վրա և վերջապես հասավ նրան, որ 1894 թվականի հունիսի 23-ին Փարիզում գումարվեց Միջազգային մարզական կոնգրես, ո-

րին մասնակցում էին 12 երկրների 79 պատվիրակներ: Կոնգրեսը որոշեց վերականգնել օլիմպիական խաղերը: 31-ամյա Քուբերտենն ընտրվեց նորաստեղծ միջազգային օլիմպիական կոմիտեի գլխավոր քարտուղար, իսկ երկու տարի անց՝ պրեզիդենտ:

Քուբերտենը գրեց օլիմպիական խաղերի անցկացման կանոնադրությունը, մարզիկների երդման խոսքերը, տվեց խորհրդանիշի, թալիսմանի, հետագայում նաև դրոշի գաղափարը: Նա գրել է ֆիզիկական դաստիարակությանը նվիրված շատ աշխատություններ, իսկ 1912 թվականին մասնակցելով հինգերորդ օլիմպիադային ներկայացված արվեստի գործերի մրցանակաբաշխությանը, «Ձոն սպորտին» բանաստեղծությամբ արժանացավ ոսկե մեդալի:

1937 թվականին մարզական աշխարհը երկու անգամ հրաժեշտ տվեց Քուբերտենին: Նրա մարմինը հողին հանձնվեց Լոզանում, ուր հիմնադրվել և գործում էր Միջազգային օլիմպիական կոմիտեն, իսկ սիրտը թաղվեց հին հունական օլիմպիական խաղերի մայրաքաղաքում՝ Ոլիմպիայում:

## ԱՌԱՋԻՆ ՕԼԻՄՊԻԱԴԱՆ

Գերմանացի ճարտարապետ Կուրցիուսը ութ տարի առաջ էր ավարտել Ոլիմպոսի պեղումները, հայտնաբերել Զևսի, Հերայի փլված տաճարներն ու մյուս պատմական հուշարձանները: Շատերը կասկածում էին, թե պատերազմներից հյուծված Հունաստանն ի վիճակի կլինի նման ծավալի մարզատոն անցկացնել:

Այսուհանդերձ կոնգրեսը գտավ, որ մարդկության քաղաքակրթության օրրաններից մեկը՝ Աթենքը պետք է արժանանա առաջին օլիմպիադայի մայրաքաղաքը դառնալու պատվին:

Եվ ահա 1896 թվականի ապրիլի 5-ն է: Առավոտ: Հունաստանի մայրաքաղաք Աթենքի ստադիոնը՝ «Ավերոֆը» լեփլեցուն է: Ութսուն հազար հանդիսականներ սպասում են բացման արարողությանը: Սպիտակ մարմարից կառուցված, տոնականորեն զարդարված ստադիոնում բաց են թողնում աղավնիներ, բոցավառվում է օլիմպիական ջահը, որի կրակը նախապես վերցված է Ոլիմպոս քաղաքի արևի ճառագայթներից:

Առաջին օլիմպիադային մասնակցում են տասներեք երկրների 285 մարզիկներ, որոնք իրենց ուժերը պետք է չափեն ինը մարզաձևերից. դասական ըմբշամարտ, մարմնամարզություն, հեծանվավազք, թեթև և ծանր ատլետիկա, լող, հրաձգություն, սուսերամարտ, թենիս:

Լարված ու շիկացած են անցնում օրերը: Ավելի հաճախ լսվում էին Ամերիկայի, Ավստրալիայի, Մեծ Բրիտանիայի մարզիկների անունները: Իսկ ո՞ւր են հույները, ի՞նչ է պատահել Պերսևսի, Հերակլեսի, Աքիլլեսի, վեցակի չեմպիոն Տիմոն Կրետացու հետնորդներին:

Հերթը մարաթոնյան վազքինն է: Այն մեկնարկ է վերցրել Աթենքից քառասուն կիլոմետր հեռու գտնվող Մարաթոն փոքրիկ ավանից, ուր մեր թվարկությունից առաջ՝ 490 թվականին հին հունական բանակը փառավոր հաղթանակ էր տարել պարսկական զավթիչների դեմ: Զինվորներից մեկը այնտեղից վազելով հասել էր Աթենք, ասել՝ «հաղթեցինք» ու անշնչացած վայր ընկել: Բոլորից ավելի մեծ հետաքրքրություն էր ներկայացնում հենց այդ մարզաձևը:

Ի ուրախություն հույների հաղթում է Սպիրոս Լուիսը:

Մարուզի փոքրիկ ավանի համեստ փոստատարը դառնում է օլիմպիադայի հերոս: Եվ արդեն զարմանալի չէ, որ հենց ստադիոնում Աթենքի վաճառականները պարտավորվում են հերոսին արժանի հագուստ կարել, վարսավիրները՝ մինչև կյանքի վերջն անվճար սափրել, իսկ ռեստորանի տերը Լուիսին մատուցում է 3655 կտրոն՝ տասը տարի շարունակ անվճար օգտվելու ռեստորանի ծառայությունից:

Հույն մարզիկները մնացած մրցաձևերում, եզրափակիչ խաղերում համառ պայքարի ելան ու շահեցին մոտ քառասուն ոսկե, արծաթե, բրոնզե մեդալներ և ոչ պաշտոնական թիմային հաշվարկում գրավեցին առաջին տեղը:

*Վ. ՄԵԽԱԿՅԱՆ*

# ՍՎԵՏԼԱՆԱ ՆԱՎԱՍԱՐԴՅԱՆ

Առաջին մենահամերգը տվեց, երբ դեռ... 13 տարեկան էր: Իսկ 1966 թվականին արդեն Երևանի կոնսերվատորիայի սան, տասնիննամյա սևահեր հայ աղջիկը ԳԴՀ-ի Ցվիկաու քաղաքում. Շումանի ծննդավայրում դարձավ Շումանի անվան միջազգային մրցույթի դափնեկիր:

Սա դեռ սկիզբն էր:

1968 թվականին Սվետլանան ԳԴՀ-ի Լայպցիգ քաղաքում Բախի ծննդավայրում արժանանում է Բախի անվան միջազգային մրցույթի դափնեկրի կոչման:

«Նավասարդյանը բացառիկ ձիրքով օժտված դաշնակահարուհի է,—իր աշակերտուհու մասին գրում է Մոսկվայի կոնսերվատորիայի պրոֆեսոր, հիանալի դաշնակահար և մանկավարժ Յա. Զակը,— հազվադեպ օրինակ, երբ կոնսերվատորիայի ուսանողուհուն արդեն կարելի է արվեստագետ համարել... Անկասկած նրան սպասվում է պայծառ և մեծ արտիստական ապագա»: Այնուհետև Սվետլանան միջազգային մրցույթների դափնեկիր է դառնում ևս երկու անգամ. 1972 թ. Բելգիայի Բրյուսել քաղաքում՝ Էլիզաբեթ թագուհու անվան և 1977 թ. Ավստրալիայի Սիդնեյ քաղաքում՝ դաշնակահարների առաջին անգամ հրավիրված միջազգային մրցույթում: Նույն թվականին էլ նրան շնորհվում է Հայկական ՍՍՀ վաստակավոր արտիստուհու պատվավոր կոչում:

Սվետլանա Նավասարդյանը դափնեկիրն է նաև Հայաստանի կոմերիտմիության 1970 թ. մրցանակի:

«Երաժշտությունը մեծապես զգալու արվեստ է, այն բնականորեն մարդու կյանքն է մտել բնությունը ճանաչելու առաջին ակնթարթից: Քամու խշշոցը, տերևների սոսափյունը, արտույտի երգը. աստղերի փայլը, անձրևի կաթիլը, նույնիսկ լռությունը — մարդկային առաջին հուզումներն էին, որ վերածվեցին երաժշտության,— մեր գրույցի ժամանակ ասաց տաղանդավոր դաշնակահարուհին:— Ես պետք է անպայման լավ նվագեմ,— շարունակեց նա,— ինձ բավարարված կզգամ, եթե կարողանամ դահլիճում նստածներից թեկուզ և մեկին բավականություն պատճառել»:

*Մ. ՍՈՍԿԱՆՅԱՆ*

«Առաջին իսկ ելույթից Սվետլանա Նավասարդյանը իրեն դրսևորեց որպես բացառիկ անհատականություն»:

«ԼԸ ՊՅՈՊԼ», Բելգիա

«Նվագում էր զարմանալի Նավասարդյանը, բացառիկ տաղանդը...»

«ՄՈՆԴ ԴԸՅՈՒ ՏՐԱՎԱՅ», Բելգիա

«Ինձ վաղուց էր ծանոթ Շոստակովիչի կոնցերտը, բայց թվում է առաջին անգամ լսեցի Նավասարդյանի կատարմամբ»:

ԱՆՆԻ ՖԻՇԵՐ
Հունգարիա

«Վերջին տարիներին ինձ չէր վիճակվել լսել Մոցարտի այսքան փայլուն կատարում»:

ՎԼԱԴԻՍԼԱՎ ԿԵԴՐԱ
Վիեննայի երաժշտական ակադեմիայի պրոֆեսոր



*Լուսանկարը՝ ՋԱՎԵՆ ՍԱՐԳՍՅԱՆԻ*

# ԳՐԱԿՔՈՍ ԵՂԲԱՅՐՆԵՐԸ



Հին Հռոմի պատմությունը առատ է քաղաքական սպանություններով: Նրա պատմության էջերը թերթելիս կարելի է հանդիպել բզկտված տրիբունների, գլխատված կոնսուլների, դաշունահար դիկտատորների: Եգիպտոսում մ. թ. ա. 48 թվին, հազիվ ափ ելած, սպանվում է Հռոմի առաջին եռապետության անդամներից մեկը՝ Գնեոս Պոմպեոսը: Իսկ մ. թ. ա. 44 թվին սենատի դահլիճում դաշույններից և սրերից խոցված ընկնում է դիկտատոր Գայոս Հուլիոս Կեսարը: Երկրորդ եռապետության անդամ Մարկոս Անտոնիոսը, մ. թ. ա. 48 թվին իր ցենտուրիոնին (հարյուրապետ) ուղարկում է գլխատելու սենատոր, իր ժամանակի ամենամեծ ճարտասան Մարկոս Տուլիոս Ցիցերոնին, և ճաշելիս հիանում սեղանին դրված իր հակառակորդի կտրված գլխով: Հենց նույն օրը, սեփական տանը սրի մեկ հարվածով սպանվում են Ցիցերոնի կողմնակիցներ հայր և որդի Իգնացիոսները...

Այս սպանությունների շարժառիթը մեկն էր՝ տարբեր խմբավորումների պայքարը իշխանության և հարստության համար: Այս առումով առանձնանում են Գրակքոս եղբայրների սպանությունները:

Տիբերիոս և Գայոս Գրակքոսները Սեմպրոնիոսների պլեբեյական անվանի տոհմից էին: Նրանց հայրը հայտնի զորավար էր և քաղաքական գործիչ: Մայրը՝ Կոռնելիան, Կարթագենը նվաճող Սցիպիոն Աֆրիկացու դուստրն էր: Ամուսնուց վաղաժամ զրկված Կոռնելիան մերժեց Եգիպտոսի ապագա թագավոր Պտղոմեոս VII-ի ամուսնության առաջարկությունը, իրեն նվիրելով զավակների դաստիարակությանը:

Եղբայրներից ավագը՝ Տիբերիոսը շատ շուտ աչքի ընկավ և իր քաջությամբ, ենթակաների նկատմամբ ցուցաբերած արդարամտությամբ ու զուսպ կյանքով դարձավ ժողովրդի սիրելին: Եվ ժողովուրդը նրան մ. թ. ա. 133 թվին ժողովրդական տրիբուն ընտրեց: Հասնելով դիրքի, Տիբերիոսը չգնաց հարստություն դիզելու և ռազմական փառք վաստակելու ուղիով, որին ձգտում էին Հին Հռոմի բոլոր երևելիները: Լինելով իսկական հայրենասեր, նա միայն նվաճումների մեջ չտեսավ հռոմեացի ժողովրդի բարօրությունը: Նրա աչքերի առաջ հողազրկվում, չքավորության էր մատնվում գյուղացիությունը, հողերը կուտակվում էին ազնվականության ձեռքին: Օժտված հռետորական տաղանդով, նա դիմեց ժողովրդին. «Իտալիայում ապրող վայրի գազանները անգամ իրենց բըներն ու որջերն ունեն, մինչդեռ մարդիկ, որոնք մեռնում են Իտալիայի համար մարտնչելով, օդից և լույսից զատ՝ ոչինչ չունեն: Նրանք անօթևան, մշտական բնակավայրից զրկված թափառում են իրենց կանանց ու երեխաների հետ...»

Իր գործունեության հենց սկզբում Տիբերիոսը վաստակեց սենատական ազնվականության թշնամությունը, որոնք մեծ հողատարածություններ էին զավթել և չէին ցանկանում զրկվել դրանցից: Սակայն նա չըն-

կըրկեց նման հզոր դիմադրության առաջ, համառ պայքարով անցկացրեց ագրարային ռեֆորմ, որի համաձայն խոշոր հողատերերը զավթած հողերի մի մասը պետք է զիջեին չքավորներին: Բայց ավելի դըժվար էր ռեֆորմի իրականացումը: Սենատը պատրաստվում էր հաշվեհարդար տեսնել Տիբերիոսի հետ, չնայած ըստ հռոմեական օրենսդրության՝ ժողովրդական տրիբունն անձեռնմխելի էր: Հաջորդ՝ մ. թ. ա. 132 թվի ժողովրդական տրիբունների ընտրությունները ընթացան շիկացած մթնոլորտում: Տիբերիոսը կանխազգալով սպառնացող վտանգը, իր երեխաներին հանձնեց ժողովրդի խընամքին: Տեղի տալով ժողովրդի խնդրանքին, նրանց ուղեկցությամբ բարձրացավ Կապիտոլիում տաճարը: Հույն պատմաբան և գրող Պլուտարքոսը պատմում է. «... Տիբերիոսը ձեռքը տարավ գլխին, ցանկանալով հասկացնել, որ իրեն վտանգ է սպառնում: Բայց նրա թշնամիները, տեսնելով այդ շարժումը, անմիջապես լուր հասցրին սենատ, իբրև թե Տիբերիոսը թագ է պահանջում»: Սենատորները նման առիթի էին սպասում: Մեծ պոնտիֆեքս (քահանայապետ) Կոռնելիոս Սցիպիոն Նազիկայի գլխավորությամբ նրանք նետվեցին Կապիտոլիում տաճարը: Սենատորները և նրանց կողմնակիցները 300 մարդ կոտորեցին: Մահակների հարվածների և քարերի տարափի տակ զոհ գնաց նաև ժողովրդական տրիբուն Տիբերիոս Գրակքոսը: Նա ընդամենը քսանինը տարեկան էր: Բայց թե որքան մեծ էր նրա նկատմամբ սենատական ծերակույտի ատելությունը, ցույց է տալիս այն փաստը, որ նրա դիակը չհանձնվեց ընտանիքին, այլ քարշ տրվեց փողոցներով և նետվեց Տիբեր գետը, որը Հին Հռոմում ամենադաժան պատիժն էր մեռածի նըկատմամբ:

Սպանելով Տիբերիոսին՝ սենատը աստիճանաբար ճնշեց նրա գլխավորած դեմոկրատական շարժումը: Ժողովրդին նոր առաջնորդ էր հարկավոր, և նա հայացքն ուղղեց Գայոս Գրակքոսին: Նա ավագ եղբորից փոքր էր ինը տարով, բայց քսանամյա Գայոսն արդեն նշանավոր դեմք էր Հռոմում:

Եվ Գայոսը պայքարի մեջ մտավ: Հռոմի ազնըվականությունը ոտքի ելավ՝ նրա առաջ փակելու Կապիտոլիումի ճանապարհը: Սակայն մասսաներն իրենց ձայնը տվին նրան, և Գայոսը մ. թ. ա. 123 թվին, ապա 122 թվին ժողովրդական տրիբուն ընտրվեց: Հըռոմն այդպիսի հռետոր դեռևս չէր տեսել: «Ես չեմ կարծում, թե որևէ մեկը նրան հավասար լիներ ճարտասանության մեջ: Նա արտահայտման մեջ վեհաքանչ էր, մըտքերում իմաստուն և միշտ լրջմիտ»,— գրում է Ցիցերոնը: Մինչև Գայոսը բոլոր հռետորները ելույթ էին ունենում դեմքով դեպի սենատը, նա առաջինն էր, որ թիկունքը դարձրեց սենատին՝ խոսքըն ուղղելով ժողովրդին: Դրանով նա ապացուցեց, որ ոչ միայն խոսքով, այլև գործով էլ նվիրված է ժողովրդին: Նա սկսեց իրականացնել Տիբերիոսի ագրարային ռեֆորմը:

Ստանալով ժողովրդի աջակցությունը, Գայոսը նոր ռեֆորմներ անցկացրեց: Իջեցվեց հացի գինը, ազնվականության ձեռքից վերցվեց դատական մենաշնորհը, թեթևացվեց ռազմական ծառայությունը, զարկ տրվեց ճանապարհների և հասարակական կառույցների շինությանը:

Սենատը դավադրություն էր պատրաստում: Գրակքոսի թշնամիները համախմբվեցին կոնսուլ ընտրված Լուցիոս Օպիմիոսի շուրջը: Օգտագործելով Օպիմիոսի լիկտոր (թիկնապահ) Անտիլիոսի անհայտ պայմաններում կատարված սպանությունը, սենատը հայտարարեց պետությունը վտանգի մեջ և արտակարգ լիազորություններ տվեց Օպիմիոսին: Այդ գիշեր ժողովուրդը պահակություն արեց Գայոսի տան առաջ: Առավոտյան նա անզեն դուրս եկավ տանից: Պլուտարքոսը պատմում է, որ կինը փորձեց պահել նրան. «Չարագործները հաղթել են և երկաթով ու բռնությամբ դատաստան են տեսնում: Եթե եղբայրդ ընկներ ռազմի դաշտում, ապա թշնամիները, հաշտություն կնքելով, կվերադարձնեին նրա մարմինը: Ինձ էլ, երևի, վիճակված է քո դիակը ստանալու համար աղերսել ինչ-որ գետի կամ ծովի, որովհետև Տիբերիոսի մահից հետո, մի՞թե կարելի է հավատ ընծայել օրենք-

ներին և անգամ աստվածներին»:

Եվ իսկապես, այլևս չէր կարելի դեմոկրատական օրենսդրության պահպանում սպասել սենատից: Ինչպես 12 տարի առաջ, այժմ էլ սենատն ապացուցեց, որ դրանք բոլորովին էլ «սրբազան և անձեռնմխելի» չեն, երբ գործը հասնում է սեփական շահերին: Գայոսի և նրա կողմնակիցների դեմ ուղարկվեց կրետացի նետաձիգների վարձու ջոկատը: Գայոսն արեց վերջին քայլը՝ փորձեց ոտքի հանել ստրուկներին, խոստանալով ազատություն, բայց արդեն ուշ էր: Վարձկանների արձակած նետերին այս անգամ արդեն զոհ գնացին 3000 մարդ: Գայոսն անցավ Տիբերի մյուս ափը և հակառակորդների ձեռքը չընկնելու համար, իր հավատարիմ ստրուկ Թիլոկրատեսին խնդրեց վերջ տալ իր կյանքին: Թիլոկրատեսը նախ կատարեց Գայոսի խնդրանքը, ապա անձնասպան եղավ: Գայոսի մարմինը նետեցին գետը, իսկ գլուխը տարան սենատ, քանի որ բերողին նույն քաշով ոսկի էր խոստացված:

Հռոմեացի ժողովուրդը չմոռացավ Գրակքոսներին: Քաղաքի կենտրոնում կանգնեցվեցին եղբայրների արձանները, իսկ նրանց մահվան վայրերը վերածվեցին սրբավայրերի: Հետագայում ժողովուրդը արձան կանգնեցրեց նաև Գրակքոսների ծնած և կրթած մորը՝ Կոռնելիային:

ՎԱՐԴԱՆ ԳՐԻԳՈՐՅԱՆ

# ՄԻ ՋԻՆՍԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

ՆԱՏԱԼՅԱ ՇԱՊՈՎԱ

Բոլորը ջինս էին հագնում. ո՛չ միայն երկարաոտ երիտասարդները, այլև միջին և ավագ սերնդի մարդիկ, փորները պրկած այդ զարմանալի շալվարների մեջ, որոնք հագնողին դարձնում են պատանի ու սլացիկ:

Բորիսին ջինս ունենալու բախտը չէր ժպտացել: Իսկ այն խմբում, ուր սովորում էր նա, համարյա բոլորը ջինսավորված էին: Նրա մտերիմ ընկերը՝ Վադիկը համարյա ամեն շաբաթ ջինս էր փոխում: Վադիկին ի՞նչ կար. նրա հայրը ճամպրուկը ցած չէր դնում, մի գլուխ արտասահմանյան ուղևորությունների մեջ էր: Երբ Բորիսը հյուր էր գնում նրանց, նրան դիմավորում էր Վադիկի մայրը՝ նույնպես ջինս հագած, հայրը՝ նույնպես ջինս հագած, և հյուրասիրում էր Բորիսին «Ուինստոն» սիգարեթներով: Նրանք նստում էին հյուրասենյակում ծովահենների հնագույն նավակ հիշեցնող լուսամփոփի տակ և քննարկում մարզական նորությունները, և Բորիսը «Սիգնալ» ֆաբրիկայի արտադրած իր շալվարով իրեն զգում էր տկլոր: Ամենագլխավոր-ն այն էր, որ նա իր այդ շալվարով ոչնչություն էր Լենաչկա Սուխոտսկայայի աչքում, մի աղջիկ, որն ամերիկյան առաջնակարգ ջինսի մեջ պատանված սլացիկ ազդրեր ուներ: Նրան շրջապատողների մեջ Բորիսը տեղ չուներ: Դժվար չէ հասկանալ, թե ինչու նա գիշեր-ցերեկ երազում էր ձեռք բերել այդ կախարդական ջինսերից:

Եվ ահա մի առավոտ Վադիկը զանգահարում է.

— Սերու՛կ, ծանոթ մարդիկ բերովի ջինս են ծախում, «լի» տեսակի: Մուգ կապույտ:

— Կվերցնե՞մ,— ճչաց Բորիսն ու նետվեց նախասենյակ, որտեղ մայրը շտապում էր աշխատանքի՝ հագած հին մուշտակն ու մաշված կոշիկները:



Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

— Մա՛մ ջան, Վադիկն ինձ համար ջինս է ճարել…

Մայրը որդու վաղուցվա բաղձանքը իմանալով, այդ նպատակի համար փող էր ետ գցել, և ահա հիմա պետք եկավ:

Շտապ-շտապ նախաճաշելով, Բորիսը սլացավ Վադիկի մոտ:

— Ահա ապրանքը, ծերու՛կ, նայի՛ր,— ասաց Վադիկը դուռը բացելով:

Մտերիմները մտան սենյակ, և Բորիսի աչքն իսկույն գնաց գտավ փընտրածը: Թիկն տվին բազմոցին և զմայլվում էին նրա գույնով:

— Հը՞, լա՞վն է,— հարցրեց Վադիկը,— դե փորձի՛ր…

Բորիսը վերցրեց, ուզեց փորձել, չեղավ, պարզ երևում էր, որ փոքր է: Խեղճ Վադիկը ուզեց կոճկել, օգնել ընկերոջը, քրտնեց ջուր դառավ: Նա ստիպեց, որ Բորիսը փորը ներս քաշի, հետո հրամայեց դիվանին պառկել, ինչպես որ լեփ-լեցուն ճամպրուկն են փակում, փորձեց այդպես վարվել: Այդ էլ չօգնեց:

— Ընդմիջում,— առաջարկեց Վադիկը, և դադար առնելով՝ սկսեցին լարված մտածել, թե ինչ անեն:

Հայտնի չէ բանն ինչով կվերջանար, եթե Վադիկը չմտածեր օգնության կանչել Լյովկային:

Լյովկա Եֆիմովը «ձյուդոյի հանճար» մականունն ուներ, բուհերի ուսանողության չեմպիոնն էր սամբոյի գծով ու ֆիզիկական իր տվյալներով համակուրսեցիների նախանձն էր շարժում:

Լյովկան ապրում էր նրանց կողքին և շուտով եկավ:

— Ի՞նչ կա, քաջե՛ր,— հարցրեց նա:

— Ես ջինսը ճարել եմ էս ավանակի համար, ու սա չի կարողանում

կոճկել,— Վաղիկը ցույց տվեց բազմոցին անշարժ պառկած Բորիսին:

— Տեսնեմ...—Լյովկան իր հզոր աջով բռնեց նրան, ինչպես ճանկում էր մրցակցին, իր հզոր ձախով կոճկեց և ապա շղթան բարձրացրեց:

— Դու ճիշտ որ հանճար ես, Լյո՛վկա,— հիացած շշնջաց Բորիսը, դեռ հաջողությանը չհավատալով:

— Ցանած չեն ինձ նմանները,— նետեց չեմպիոնն ու քայլեց դեպի դուռը, խոսքի մեջ ժլատ՝ ինչպես միշտ:

— Հը՞, ո՞նց ես,— հոգատարությամբ հարցրեց Վաղիկը, երբ հսկան գնաց:

— Սովորական, — պատասխանեց Բորիսը, զվարթ ժպտալով:

Մինչդեռ բոլորովին էլ այդպես չէր: Ջինսը այնպես էր կտրում մարմինը, որ նա ուզում էր ճչալ ու լաց լինել: Նստելու մասին խոսք չէր կարող լինել: Երբ նա մի կերպ գնաց դասի, ընկերները նրան կոճղի պես տարան դրին ամենավերջին նստարանին, որտեղ նա պառկեց երկու ժամ:

Դասերին հաջորդեցին գործնական պարապմունքները: Երբ Բորիսը սարքավորումները բերեց և սկսեց «սինթեզել», զգաց, որ էլ չի դիմանում: Պետք է հանել հագից, գրողի ծոցն ուղարկել այդ զահրումար ջինսը, նեղսրտած մտածեց նա, բայց և անմիջապես հիշեց, թե ինչպես էր նայում իրեն Լենոչկան, երբ այսօր ինքն հայտընվեց լաբորատորիայում: «Հարկավոր է շտապ գտնել Լյովկային»,—մըտածեց նա:

Բորիսը մի կերպ քարշ գալով գընաց ֆիզիկայի դասասենյակը, որտեղ չեմպիոնը դաս էր լսում: Դուրս կանչեց նրան: Սա իսկույն հասկացավ, բռնեց ջինսի բախտավոր տիրոջ ձեռքն ու երկուսով անհետացան այն դռան ետևը, որի վրա պատկերված է լինում սև կոստյումով տղամարդ: Վերադառնալով լաբորատորիա, Բորիսը ցավով մտածեց, որ ստիպված է լինելու ջինսին հրաժեշտ տալ: Հո չէ՞ր կարող րոպեն մեկ վազել Լյովկայի մոտ:

«Կծախեմ»,— որոշեց Բորիսը, բացելով լաբորատորիայի դուռը, և սառավ տեղում. Նրա սեղանի մոտ կանգնած էր Լենոչկան:

— Քո փորձն ստացվու՞մ է,— փաղաքշալից ասաց Լենան,— բայց ես, դրա համար չեմ եկել: Վաղն իմ ծննդյան օրն է, եթե զբաղված չես, անպայման արի՛: Ես կսպասեմ: Հասցես գրի՛ր...

Բորիսն զգաց, թե ինչպես իր երեսը ողողվեց երջանիկ ժպիտով և միաժամանակ սկսեց վառվել:

Կատարվել է, այնուամենայնիվ, հրաշք. Լենոչկան նրան մարդահաշիվ է անում, հիմա Բորիսը «յուրային է», մտնում է նրա ջինսավորների շրջանի մեջ: Եվ այդ արեց ջինսը, հենց ջինսը:

Չէ՛, նա դուրս չի գա այս սքանչելի շալվարի միջից, եթե նույնիսկ ըստիպված լինի ամենախիստ դիետա պահել: Ո՛չ, նա սրանից չի բաժանվի, երբե՛ք...

— Կգամ,— ասաց Բորիսը,— անպայման կգամ: Բայց՝ ընկերոջս հետ...

— Ինչպես ուզում ես,— ասաց Լենան ու գնաց:

Մի ամիս անց տեղի ունեցավ Լենայի և «ձյուդոյի ՛հանճար» Լյովկայի հարսանիքը:

Հարսանիքին Բորիսը նստած էր «Սիգնալ» ֆաբրիկայի արտադրած իր լեն-լնփոշ շալվարով:

# Ի՞ՆՉ ԱՍԱՑԻՆ՝ ԱՆՄԱՀՈՒԹՅՈՒՆԻՑ ԱՌԱՋ...



## ԼՅՈՒԴՎԻԳ ՎԱՆ ԲԵԹՀՈՎԵՆ

(1770—1827)

Մեծ տառապյալ էր թե՛ արվեստում, թե՛ անձնական կյանքում:

Շատ վաղ սկսեց նվագել կլավեսին, երգեհոն, ջութակ, ալտ, ֆլեյտա: 22 տարեկան էր, երբ ընդմիշտ հեռացավ հայրենի Գերմանիայից և բնակվեց Վիեննայում, որտեղից գրեթե երբեք չհեռացավ: Այստեղ արագ ճանաչվեց և մեծ համբավ ձեռք բերեց՝ նախ իբրև կատարող, ապա նաև իբրև ստեղծագործող: 27 տարեկան էր, երբ սկսվեց նրա ողբերգական կյանքի մեծ տառապանքը՝ անվերջ առաջադիմող խլությունը: Նա սկսեց խուսափել հասարակությունից, մերժել իրեն սիրող կանանց, հրաժարվել հրապարակային ելույթներից:

Բայց մեծ երաժշտի ոգին ըմբոստ էր, կամքը՝ անկոտրում, հանճարի գաղտնիքը՝ ներքին հսկայական կենտրոնացման հասնելու անօրինակ կարողությունը: Այդ վիճակում, իր վիթխարի աշխատունակության շնորհիվ, ստեղծեց անմահ գործեր՝ «Հերոսական բալլադ»-ն ու Իններորդ սիմֆոնիան, որը դարձավ նրա կյանքի ու ստեղծագործության գագաթը:

Իր աշխարհայացքով Բեթհովենը ֆրանսիական մեծ հեղափոխության հարազատ զավակն էր ու անմիջական ժառանգորդը: Համոզմունքներով մարտնչող դեմոկրատ էր ու հանրապետական, էությամբ՝ ազատաբաղձ քաղաքացի: Կյանքի ու արվեստի նշանաբանն էր՝ «Պայքարի միջով դեպի հաղթանակ», գեղարվեստական կերպարը՝ պայքարող, տառապող, ի վերջո հաղթանակող հերոսական անհատը:

Իր մահկանացուն կնքեց միայնակ ու լքված, աղքատության մեջ՝ իմաստուն անդորրությամբ ու իր կարելին իրագործած մարդու հեգնոտ խաղաղությամբ: Իր վերջին խոսքն արտասանեց լատիներեն.

— Կատակերգությունն ավարտվեց... Ծափահարեցե՛ք, բարեկամնե՛ր:



## ՋՈՐՋ ԳՈՐԴՈՆ ՆՈՅԵԼ ԲԱՅՐՈՆ

(1788—1824)

Լորդ էր և լորդերի պալատում պաշտպանում էր անգլիական բանվորների շահերը: Անգիջում էր ժամանակի Անգլիայի քաղաքական ու գաղափարական ռեակցիայի դեմ իր պայքարում. պայքար, որի ազդեցությունը հսկայական եղավ Եվրոպայի կյանքում: Նույնանում էր իր պոեմների հերոսների հետ. երիտասարդ ռոմանտիկ Չայլդ Հարոլդը ողբում է իդեալների խորտակումը, անազատ կյանքում անձնատուր լինում հուսահատությանը: Անձնական կյանքում Բայրոնը շատ բանով է հիշեցնում իր կերտած Դոն Ժուանին:

Նրա ազատաբաղձ հոգին գործուն պայքար էր տենչում, և նա վերջնականապես ու ընդմիշտ հեռացավ հայրենիքից: Իտալիայում գրեց բազմաթիվ

երգեր, որոնցով իտալական ժողովրդին ազատագրական պայքարի էր կոչում ընդդեմ Ավստրիայի լծի: Այստեղ նա դարձավ կարաբինյորների ընդհատակյա կազմակերպության անդամ:

Առհասարակ, Բայրոնն իրեն ավելի շատ քաղաքական ու ռազմական գործիչ էր համարում, քան բանաստեղծ: Եվ 1823 թ. գնաց Հունաստան, որտեղ հույն ժողովուրդը ազատագրության դրոշ էր բարձրացրել թուրք նվաճողների դեմ: Հանուն ազատության նա չէր խնայում ո՛չ իր միջոցները, ո՛չ ժամանակը, ո՛չ առողջությունը: Չխնայեց և իր կյանքը:

Կյանքի վերջին պահին ասաց.

— Այժմ ինձ քնել է պետք...

Նա մեծապես հոգնել էր:



## ՀԱՅՆՐԻԽ ՀԱՅՆԵ

(1797—1856)

Գերմանական պոեզիայի մեծ նորարարն ու բարեփոխիչը 84 տարեկանից մինչև կյանքի վերջը քաղաքական վտարանդի եղավ, Փարիզում դարձավ Հեգելի ուսանողը և հասկացավ իր մեծ ուսուցչի տեսության հեղափոխական բնույթը, մի բան, որ հազվադեպ էր այն ժամանակներում: Նա իր ողջ կյանքն ապրեց իբրև քաղաքական պայքարի ձայնեղ թմբկահար, ազգայնամոլության ու միլիտարիզմի կրքոտ մերկացնող, կղերի ու կղերականության մոլի թշնամի: Համաշխարհային գրականության մեջ Հայնեն անփոխարինելի տեղ է զբաղեցնում իբրև իրոնիկ պոեզիայի փայլուն ներկայացուցիչ: Նա իր անողոք երգիծանքով չէր խնայում ո՛չ իր գաղափարական հակառակորդներին, ո՛չ իր կարոտած հայրենիքն ու սիրած ժողովրդին, ո՛չ էլ ինքն իրեն:

Մահվանից առաջ պահանջեց.

— Թուղթ ու մատիտ տվեք ինձ...

Տեսնես, ո՞ւմ դեմ պիտի ուղղված լիներ նրա վերջին էպիգրամը, աշխարհի հզորներից ո՞ր մեկին էր մտադիր «անմահացնել» իր այնքան «չար» լեզվով, սուր մտքով ու անսահման բարի սրտով:



## ԱԼԲԵՐՏ ԷՅՆՇՏԵՅՆ

(1879—1955)

Նրա հարաբերականության տեսությունը, որն ըստ էության հանդիսանում է տարածության, ժամանակի և ձգողականության ընդհանուր տեսությունը, հեղաշրջում մտցրեց ոչ միայն տեսական ֆիզիկայի, այլև աշխարհի ու տիեզերքի փիլիսոփայական ընկալման մեջ: Այդ տեսությունը մինչև օրս ապշեցնում է մտքի սլացքով, տրամաբանության հստակությամբ և տիեզերական խորությամբ: Ա. Էյնշտեյնը լուրջ ներդրումներ ունի նաև քվանտային տեսության ու ֆիզիկայի նվաճումներում:

Նա իր աշխատանքային գործունեությունն սկսել է իբրև հասարակ ուսուցիչ և, չնայած համաշխարհային մեծ փառքին, գիտական բարձր կոչումներին ու տիտղոսներին, պատվավոր մրցանակներին (42 տարեկան էր, երբ արժանացավ Նոբելյան մրցանակի), չփոխեց գավառական ուսուցչի իր կեցվածքը:

Նա մնաց այնպես հանգիստ ու անխռով. ինչպես ապրել էր իր բեղուն կյանքը, ինչպես կատարել էր իր մեծ հայտնագործությունները, ինչպես պայքարել էր գերմանական ֆաշիզմի դեմ,

իր սկզբունքային խոսքն ասել ընդդեմ պատերազմի, հանուն խաղաղության:

Զգալով մոտալուտ վախճանը՝ ասաց դստերը.

— Ես այստեղ իմ գործն ավարտեցի:



## ԼԵՎ ԴԱՎԻԴՈՎԻՉ ԼԱՆԴԱՈՒ

(1908—1968)

Դաուն, ինչպես նրան անվանում էին ոչ միայն նրա մտերիմներն ու ընկերները, այլև ուսանողներն ու աշակերտները, 20-րդ դարի ֆիզիկայի մեծագույն դեմքերից էր, գիտության մեջ նոր ոճի՝ 20-րդ դարի կեսի ոճի հիմնադիրը: Այդ բարձրահասակ, գեղեցկադեմ տղամարդը, կյանքին ու մարդկանց սիրահարված գիտնականը ամեն ինչում պարզ էր, հասարակ, վերին աստիճանի անկեղծ ու սկզբունքային, կենսուրախ ու զվարճախոս: Իր արտակարգ հմայքի շնորհիվ սիրելի էր ամենքին:

Շատ վաղ տարիքում դրսևորելով իր անզուգական տաղանդը՝ անմնացորդ նվիրվեց գիտությանը և մեծ հաջողությունների հասավ տեսական ֆիզիկայի մի շարք կարևոր բնագավառներում: Լ. Դ. Լանդաուն ՍՍՀՄ պետական եռակի և Լենինյան մրցանակների, մի քանի արտասահմանյան, այդ թվում Նոբելյան մրցանակի դափնեկիր էր:

Նա ամեն ինչ անում էր ոգևորությամբ և սիրում էր կրկնել. «Դա անչափ զարդարում է կյանքը»:

Ավտոմոբիլային աղետից հետո, հրաշքով ողջ մնալով, նա երկար տառապեց, մինչև որ 1968-ի ապրիլի 1-ին ասաց իր վերջին խոսքը.

— Ես վատ չապրեցի իմ կյանքը: Ինձ միշտ ամեն ինչ հաջողվում էր:



## ՀՐԱՎԻՐԱՏՈՄՍ

*ԳԱՐՈՒՇ ՀԱՐՅԱՆՑ*

Ով չի եղել դեռ կրկեսում,
Թող այսօր գա, ծափահարի,
Որովհետև գայլն է երգում
Եվ օձն հրդեհ պիտի մարի:

Ով չի եղել դեռ կրկեսում,
Թող այսօր գա, ծափահարի,
Որովհետև արջն է սուլում
Եվ շունն ավտո պիտի վարի:

Ով չի եղել դեռ կրկեսում,
Թող այսօր գա, ծափահարի,
Որովհետև ձին է խոսում
Եվ փիղը վալս պիտի պարի:

Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ

# Մեղադրյալները կենդանիներն են

Կենդանիների նկատմամբ դատավարությունները սովորական երևույթ էին միջին դարերում: Ընդհուպ մինչև 20-րդ դարը դատում էին հանցանք գործած կենդանիներին: Դատում էին բոլոր դատական արարողությունները պահպանելով և ամենայն մանրակրկիտությամբ:

Հարկ եղած դեպքում մեղադրվող կենդանուն ձերբակալում էին և կալանքի տակ պահում բոլոր հանցագործների հետ միևնույն բանտում, երբեմն էլ՝ ննանօրինակ հանցանք կատարած մարդկանց հետ՝ միևնույն խցում:

Պահպանվել է 1408 թվականից մի հաշիվ, որից երևում է, որ Ֆրանսիայում երեխայի սպանության մեջ մեղադրանքով ձերբակալված խոզը ստացել է նույնքան օրապահիկ, որքան և մնացած կալանավորները:

Դատավարությունների ժամանակ որպես վկա հարցաքննում էին մարդկանց, նաև հանցանք գործած կենդանիներին: Քանի որ վերջիններս դատարանին հասկանալի



լեզվով չէին «խոսում», ապա որպես պատասխան էին ընդունվում այն ձայները, որոնք կենդանիներն արձակում էին հարցաքննության ուղեկցող խոշտանգումների ժամանակ, ընդ որում, այդ ձայները դատարանն ընկալում էր որպես գործած մեղքի ընդունում:

17-րդ դարում գերմանական մի քաղաքում հանցագործ շանը դատապարտեցին ցմահ բանտարկության: Սակայն կենդանիներին ամենից հաճախ դատապարտում էին մահապատժի: Դատավճիռը ի կատար էին ածում պահպանելով նույն արարողությունները, որոնք սահմանված էին մարդկանց համար: Մահապա-



տիժը կատարվում էր քաղաքային հրապարակում, զանգերի ղողանջների ներքո: Դատապարտված կենդանուն բերում էին ամբոխի ուղեկցությամբ, հաճախ հագցնելով մարդկային հագուստ:

1442 թվականին Ցյուրիխում, Արդարադատության պալատի դեմ-դիմաց տեղադրված հարթակում դատ էին վարում և պատմուճաններ հագած քաղաքային մի քանի դատավորներ: Նրանք դատում էին վանդակով հրապարակ բերված գայլին, որը ծվատել էր երկու աղջիկների: Գերագույն մեղադրողը կարդաց սովորական մեղադրական ճառ, իսկ



դատապաշտպանն, ըստ ամենայնի, ցանկանում էր մեղմել իր պաշտպանյալի հանցանքը: Օրենսգրքից ընտրեցին համապատասխան հոդված, ելույթ ունեցան վկաները: Ի վերջո գայլին մեղավոր ճանաչեցին և դատապարտեցին կախաղանի:

Մեկ ուրիշ օրինակ: Անգլիայի թագավոր Հենրիխ 7-րդը հրամայեց կախել չորս շների, որոնք պատառ-պատառ էին արել առյուծին, քանի որ նրանք ավելի ցածր դասի պատկանելով՝ համարձակվել էին հարձակվել գազանների արքայի վրա:

Դատավարությունները կարող էին ընթանալ ոչ թե միայն մեկ կենդանու, այլ ամբողջ մի կենսաբանական տեսակի դեմ: Կանադայում դա-



տել են արագիլներին, Գերմանիայում՝ ճնճղուկներին, Ժնևի լճի շրջանում՝ օձաձկներին: Նըման դատավարությունների ժամանակ հիմնականում որպես հայցվոր հանդես էին գալիս տըվյալ հողի կամ ջրի սեփականատերերը, ավելի հաճախ՝ վնաս կրած գյուղական համայնքը: Եթե դատավարությունն ավարտվում էր ի վնաս կենդանիների, ապա նրանց, գլխավորապես, «արտաքսում» էին բնակվելու այլ վայրերում:

19-րդ դարում, որպես կանոն, արդեն դատ էին բաց անում ոչ թե վնաս պատճառած կենդանու, այլ նրա տիրոջ դեմ:

Դառնանք մեր օրերին:

1958 թվականին անգլիական թերթերը առանց հումորի նշույլի տեղեկացնում էին լեդիներին ու ջենտլմեններին, որ լոնդոնյան ոստիկանատանը ոչ այնքան սովորական հանցագործ է գտնվում. բանտախցում, երկաթե ձողին է գամված մի սպիտակ թութակ՝ Կոկի անունով: Նա ձերբակալվել էր իր տիրուհու՝ յոթանասունչորսամյա միսիս Միննի Ֆիտչերի սպանության մեղադրանքով: Մենք չգիտենք, թե կոնկրետ ինչ պատճառով էր կատաղած թութակը կտցահարել իր բարեբարուհու գանգը: Ըստ երևույթին, դա չպարզեց նաև լոնդոնյան դատարանը, բայց, այնուամենայնիվ, թութակը մեղավոր ճանաչվեց սպանության մեջ:

60-ական թվականներին Ֆրանսիայում, Սենա և Մարնա դեպարտամենտում անսովոր դատավարություն էր ընթանում: Երկաթուղային կայարանի պետը մեղադրանք էր հարուցել մոտակայքում բնակվող սեփականատիրոջ դեմ: Մեղադրվում էր նրա թութակը, որը սովորել էր ընդօրինակել գնացքների մեկնումը թույլատրող ազդանշանը: Եվ շատ գնացքներ մեկնում էին ոչ թե ըստ չվացուցակի, այլ ըստ թութակի ազդանշանի: Դատարանը որոշեց. «Թութակին բռնագրավել»:

70-ական թվականների սկզբին Սասսեք կոմսությունում կեղծամ ու վեղար հագած դատավորը, ի բարօրություն թագավորության չորքոտանի բնակչության, Բաչ անունով շանը դատապարտեց մահվան:

Ծննդյան օրից սկսած Բաչը հարձակվում էր իր բոլոր արյունակիցների վրա, առանց նախապատվություն տալու այս կամ այն տեսակին ու ցեղին: Նրա տիրուհի միս Քեմբլը համոզելով ու փաղաքշելով փորձում էր Բաչին ստիպել հարգել մարդկային օրենքները, սակայն՝ ապարդյուն: Չօգնեց և տարկետումը, որին տիրուհին հասավ կենդանիների պաշտպանության անգլիական լիգայի օգնությամբ: Չազդվելով ոչ հորդորներից, ոչ հոգեվերլուծության բուժումից, Բաչը շարունակում էր իր չարագործությունները: Եվ ահա վերջնական դատավճիռը ընդունված է. մահապատիժ:

Այսպիսին է դատավարությունների բազմադարյան ուղին, ուր մեղադրյալները... կենդանիներն էին:

*ԱԼԵՔՍԱՆԴՐ ԽՈԱՆԵՍՅԱՆ*



Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ

Լույս է տեսնում 1928 թվականից



# ՊԻՈՆԵՐ 12. 1979 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ



Շապիկի առաջին էջը՝ ԶԱՎԵՆ ՍԱՐԳՍՅԱՆԻ

Գլխավոր խմբագիր՝
ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝
ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատ. քարտուղար), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ Գր., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՄԻԼԻՏՈՆՅԱՆ Է., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Ն. (գեղ. խմբագիր)։

Տեխ. խմբագիր՝
Հ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ

Վերստուգող սրբագրիչ՝
Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

«Пионер» на армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

Հասցեն՝ 375015, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15: Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96:

ՎՖ08766 : Պատվեր 2186: Տպաքանակ 51612: Տպ. 3 մամ.:
Հանձնված է արտադրության 12/XI 1979 թ.:
Ստորագրված է տպագրության 12/XII 1979 թ.:

ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մելքումյանի անվան պոլիգրաֆկոմբինատ. Երևան—9. Տերյան փ. № 91:

## ԺԱՄԱՆՑ



*Ո՞ր քառակուսուց է կտրված այս պատկերը*



*Գտեք Մայքի Մաուսի ստվերը*

## ՊԱՏԱՍԽԱՆՆԵՐ

**ԲԱՌԱՇՂԹԱ—ՎԻԿՏՈՐԻՆԱ**
**«Աշխարհի գետերը»**



1. Ուրալ: 2. Լենա: 3. Անգարա: 4. Ամազոն: 5. Նեղոս: 6. Սենա: 7. Ազատ: 8. Տարա: 9. Ալդան: 10. Նելսոն: 11. Նարին: 12. Նարվա: 13. Ռոնո: 14. Որոտան: 15. Նեման:

## ՄԻԱՅՆԱԿ ԾԱՂԻԿ

*ՄՆԱՑԱԿԱՆ ԹԱՐՅԱՆ*

Ու՞ր են թռել,
Ու՞ր են կորել
Քույրիկներդ
գույն-գույն, պես-պես.
Որ դաշտի մեջ
Մենակ ու խեղճ,
Կապույտ ծաղիկ,
թողել են քեզ:

Աշուն է, ցուրտ.
Քամին անգութ
Փոթորկում է
քո շուրջ-բոլոր,
Իսկ դու մենա՜կ,
Իսկ դու մենա՜կ...

## ՁՄԵՌ

*ՎԱՀԱՆ ՀԱԿՈԲՅԱՆ*

Ձյուն է, ձյուն է
Ճերմակ ձյուն,
Ճերմակ, ճերմակ
Խնդություն,
Դաշտը արծաթ
Տարազով,
Չորս կողմն անծայր
Ճերմակ ծով...
Հետքե՛ր, հետքե՜ր
Ձյան վրա
Գրե՛ր, գրե՜ր
Բազմազան՝
Պատմություններ են
գրված
Լեզուներով այլազան...

«ՅՈՒՐԱՔԱՆՉՅՈՒՐ ՀՈՒՇԱՐՁԱՆԻՆ՝ ԱՆՁՆԱԳԻՐ»

ՕԳՏՐԱՅԻԱՆ ՇԱՐՈՒՆԱԿՎՈՒՄ Է

# ՊԱՀՊԱՆԵՆՔ ՄԵՐ ՀՈՒՇԱՐՁԱՆՆԵՐԸ

Երերույքի տաճարը (IV—V դդ) գտնվում է Անիի շրջանի Անիպեմզա ավանի մոտ, Ախուրյանի ափին: Բազիլիկը (սյունազարդ տաճար) հնարավորություն է տալիս պարզաբանել հայկական ճարտարապետության ծագման ու կազմավորման շատ կարևոր հարցեր:

Երերույքի տաճարը՝ կիսավեր է: Սակայն այնքան տխրեցնող չէ հարյուրամյակների պատճառած վնասը, որքան այն անհոգի մարդկանց վերաբերմունքը, որոնք հուշարձանի պատերին գրել ու փորագրել են իրենց անունները:

Այսպես վարվողները չեն հարգում հարազատ ժողովրդի մշակույթը:

Լուսանկարները՝ ԶԱՎԵՆ ՍԱՐԳՍՅԱՆԻ

ԻՆԴԵՔՍ 77806
ԳԻՆԸ 15 Կ.